ՀԱՏԸՆՏԻՐ

ՊԱՏՄՈՒԹԻՒՆՔ ՎԱՐՈՒՑ

# ՕՍՄԱՆԵԱՆ ԹԱԳԱՒՈՐԱՑ

ԵՒ

ՎԵԶԻՐԱՑ

ՀԱՏԸՆՏԻՐ

ՊԱՏՄՈՒԹԻՒՆՔ ՎԱՐՈՒՑ

# ՕՍՄԱՆԵԱՆ ԹԱԳԱՒՈՐԱՑ

ԵՒ

ՎԵԶԻՐԱՑ

ՅՊԱԳՐԵԱԼ ԾԱԽԻՒՔ

ՄԵԾԱՊԱՏԻՒ ՍԻՒԼԷՅՄԱՆ ՓԱՇԱՅԻ

ՄԵԾԻ ԴԵՍՊԱՆԻՆ ՕՍՄԱՆԵԱՆՑ Ի ՓԱՐԻԶ



Ի ՎԵՆԵՏԻԿ

Ի ՎԱՆՍ ՍՐԲՈՅՆ ՂԱԶԱՐՈՒ

1848

طبعیه‌سینی دخی احسان واعطا واولوجهله

اجرا بیورمش اولدقلرندن مستر مزبورك

رهبانی طرفلرندن نشر مشار الیه حضرتلرینك

اثر عالیلرینی اعلان واشاعه ایچون

اشبو محله شرح وترقیم ایلنشلردر

سنه میلادیه
١٨٦٨

درشهر وندیك

طرف سلطنت سنیه دن فرانسه سفارت

جلیله سیله پارس شهرینه تشریف بیوریلان

مشیر معالیسمیر دولتلو سلیمان رأفت پاشا

حضرتلری منصف اولدقلری شیمهٔ بهیهٔ

مشیرلری اقتضاسی اوزره وندیك شهرنده

مختاریانه نام مناستره حین عزیمتلرنده آثار

خیریه اولمق اوزره اشبو کتاب لطافت نصاب

طبع ولتترا ولنمسنی تنسیب برله مصارفات

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Մե՛ր ազգին ընտիր կատարելութեանցը մէկը ճանչցուած է ամէն ժամանակ իր խոհական վարմունքը՝ որով ոչ մեծութեամբ կը մոռնայ իր չափը, և ոչ նեղութեամբ կը վհատի, այլ գոհ սրտով և արթուն չափաւորութեամբ կը նայի որ հաւատարիմ մնայ այն սրբազան պարտքերուն որ ունի առ Աստուած, առ տէրութիւնը և առ ընկերս: Այս ահա աս նախանձելի կատարելութեանքն է որ սիրելի եղած է ընդհանրապէս ամէն ատեն իր տէրանցը, թէ ազգայնոց և թէ օտարաց, և մանաւանդ կերպով մը Օսմանեան տէրութեան:

Բայց մեր ազգին աս մեծազօր տէրութեանս

աւելի ալ աս տարիներս սիրելի ըլլալուն պատ-
ճառ մն կ'երևնայ մեզի՝ որ յայտնապէս կը տես-
նէ տէրութիւնը թէ իրեն ու հպատակներուն ալ
կարգէ դուրս ջանք մը սկսեր են ցուցընել որ
ուսմանց և արուեստից և քաղաքական ու մար-
դավարական գիտութեանց եռանդ ըլլալով, իրենք
ալ իրենց կողմանէ գործակից ըլլան երկրին ծաղ-
կելուն ու երջանկութեանը, և ձեռքերնէն եկած
ծառայութեանցը մէջ հաւատարիմ և խնամոտուն
գտնուելով թէ ազգին և թէ տէրութեան հաւա-
տարմութիւն ըլլան։ Ո՛րչափ ուրախութիւն է
մեզի տեսնելը որ լաւ հասկըցած է աս բանս
հիմակուան մեր Վեհափառ Արքայն ալ՝ ոչ միայն
իր առանձին և բնական բարեսէր և բազմա-
հմուտ և մտադիր խնամքը որով անխտիր ամե-
նայն հպատակացը երջանկութիւնը կը հոգայ,
այլ նաև այն խոհեմազարդ և ազնիւ Փաշանե-
րուն վկայութեամբը՝ որ աս տարիներս Եւրո-
պայի կողմերը ճամբորդութիւն ընելով առիթ-
ունեցան անձամբ տեսնելու թէ ինչպէս մեր
Հայոց ազգը նաև հեռաւոր երկիրներ իր զաւ-
կըները կը տանի, զգուշութեամբ կը դաստիա-

բակէ կը կրթէ , գիտութեանց և արուեստից՝ լե-
զուները և քաղաքականութեան տեղեակ կ՚ընէ
ու նորէն իրենց հայրենիքը կը դարձընէ . և աս
բանիս վրայ նոյն Վեհափառ Թագաւորը շատ ան-
գամ՝ բանիւ և գործով իր հաճութիւնը յայտ-
ներ է ։

Մեր տեղեկութիւնները իրեն տուող մեծա-
պատիւ Իշխաններէն մէկն ալ Սիւլէյման փա-
շան է , որ Օսմանեան Դռնէն դեսպանու-
թեան պաշտօնիւ Փարիզ երթալու ժամանա-
կը հանդիպեցաւ Վենետիկ մեր վանքը , և իր
ազնուական և ուսումնասէր ու բարեսէր սըր-
տին զգացմունքները շատ խելացի ու խրախու-
սական խօսքերով յայտնելէն 'ի զատ , ինքնայօ-
ժար կամօք յանձնեց մեզի որ իր ծախքովը փոք-
րիկ գրուածք մը հրատարակենք աշխարհաբառ՝
մեր ազգին օգտակար ու զուարճալի ։ Մենք ալ
պարտուպատշաճ շնորհակալութեամբ ընդունե-
ցանք իր վեհանձնական հրամանը և ընծան , և
անով ահա հրատարակեցինք աս գրքոյկը , որ
Օսմանցւոց ազգին անուանի մարդկանցը հատ-
ընտիր վարքերն է համառօտ ոճով պատմուած ։

Իրաւ է որ Օսմանեան ազգին մէջի երևելի անձանց թիւը՝ սովորաբար կարծուածէն շատ աւելի է ու մեծահատոր գրքերու նիւթ կրնայ ըլլալ, բայց առ այժմ այնպիսի գործ մը շարադրելը մեր վախճանէն ու դիտաւորութենէն դուրս երևնալով, մենք հոս միայն ան Թագաւորներուն ու Օսմանցի վեզիրներուն վարքերը դրինք՝ որոնց տեղեկութիւնը աւելի հարկաւոր և օգտակար ճանչցանք մեր ազգին, ինչպէս էր նաև [illegible]արեբարին կամքը, որուն բարեսրտութեանը անմահ յիշատակ կը փափաքինք որ ըլլայ աս մեր փոքրիկ աշխատանքն ալ։





# ԹԱԳԱՒՈՐՔ



## ՍՈՒԼԴԱՆ ՕՍՄԱՆ Ա.

ՄԵԾԱՄԵԾ մարդկանց մէջ ուրիշներէն աւելի զարմանալի կ'ըլլան իրաւամբ անոնք որ մեծ ժողովրդեան կամ ազգի մը գլուխ և հզօր տէրութեան մը հիմնադիրը ու թագաւոր կ'ըլլան։ Անոնց մէկն է ահա նաև սուլդան Օսման, որուն անունովը կոչուեցաւ Օսմանեան մեծազօր տէրութիւնը, և որուն ցեղէն է հինգհարիւր տարուընէ 'ի վեր նաև հիմակուան թագաւորող ազգատոհմը։

Օսման գեղեցիկ մարդ մըն էր լայն ընքուիներով, մթնագոյն մազերով, սև մօրուօք, քիթը սուր, մարմնոյն գոյնն ալ ցորենի գունով. անոր համար ալ Կարա Օսման կը կանչէին զինքը։ Իր քաջութեանը ու ահաւոր տեսքին նայելով եղան որ իր մեծնալուն գուշակութիւն ըրին առաջուց. որոնցմէ մէկն ալ եղաւ Ապտալ տէրվիշը

որ մեծ բազէ մը տեսաւ Օսմանին վրայ թեւերը փռած, ու անկէ գուշակեց որ օր մը Թագաւորէ պիտի։ Ասոր համար Օսման ալ երբոր Թագաւորեց, իր մյուրքարէլին վանք մը շինեց, ու կ'ըսեն թէ անկէց սկսաւ տէրվիշներուն կարգը։

Օսմանին հօրը անունն էր Էրդօղրուլ. աս մարդը Կուտինայի՝ այսինքն Քէօթահեայի կողմերը իր քաջութեամբը պզտի իշխանութիւն մը ձեռք ձգեր էր։ Օսման ուրիշներուն բարի գուշակութիւններովը սիրտ առած՝ կը ջանար որ իր հօրմէն առած սահմանը ընդարձակէ, ու քաջութեամբ առած տեղերուն բնակչաց սիրտը՝ արդարութեամբ կ'որսար, հրամմելով անանց վրայ դրած իշխաններուն՝ որ տաճկաց ու քրիստոնէից միակերպ իրաւունք ընեն։ Ասոր առաջ երթալը տեսնելով Ալայէտտին Բ., Կոնիայի Թագաւորը իշխանութեան նշաններ խրկեց իրեն. ուրիշ նշաններու հետ թուղ մըն ալ, որ ոսկի գլխով ձողի մը ծայրէ կախուած ձիու պոչ էր, Թաթարներուն հին ատենէ 'ի վեր սովորութեանը պէս։ Երբ-որ Ալայէտտին մեռաւ, ու տէրութիւնը իրեն իշխաններուն բաժնուեցաւ, ան ատեն Օսման ալ ինքնագլուխ Թագաւոր եղաւ, ու Ենիշէհիր ըսուած քաղաքը իր աթոռը դրաւ։ Մուֆթի մըն ալ դրաւ հոն, որ է դենպետ, ու հրամմեց որ ուրբաթ օրերը խութպէին մէջ, որ տաճկըններուն դաւանութիւնը ու Թագաւորին համար ըրած աղօթքներին է, իր անունն ալ յիշուի։ Իսկ իր առջի

իշխանութեան տեղերը՝ Օրխան անունով որդւոյն ու ազգականացը բաժնեց։ Օրխան շատ օգնեց իր հօրը թագաւորութեանը սահմանը տարածելու. Թաթարները վռնտեց, Նարէնուս բերդը առաւ, ու իր հօրը հիւանդութեանը պատճառաւ՝ ինքը բոլոր զօրքը հետը առած՝ դիմեց Պուրսայի վրայ։ Քաղաքապետը երբոր տեսաւ որ բանը գէշ է, խոստացաւ քաղաքը իրեն տալ՝ թէ որ իրենց խնայէ ու թողու որ երթան ազատ։ Ասանկով Օրխան առաւ ան անուանի մայրաքաղաքը Բիւթանացւոց, որ եղաւ տաճկըներուն հին թագաւորանիստ քաղաքը։ Օսման մեռնելէն առաջ տեսաւ աս մեծ յաղթութիւնը, ու խրատելով իր որդին որ արդարութեամբ ու քաղցրութեամբ թագաւորէ՝ մեռաւ 1326ին, եօթանասուն տարուան, ու թագաւորութիւնը քշեց քսանըեօթը տարի։

Իր գերեզմանը տաճկըներուն ուխտատեղի է, ու թէպէտ գերեզմանին արծաթ գմբէթը Պուրսայի մեծ կրակին այրելէն ետքը՝ հաստատ պատէ շինեցին, այսու ամենայնիւ Սիւմիւշքիւմպէթ կը կոչուի տեղին անունը։ Իր դրօշակը ու թուրը թագաւորներուն գանձատունը կը պահուի, ու անոր պատկերն է՝ որ ծովակալի դրօշակին ծայրը կը տեսնուի ինչուան հիմա։



# ՍՈՒԼԴԱՆ ՕՐԽԱՆ

ՍՈՒԼԴԱՆ Օրխան երկայնահասակ մարդ մըն էր, Թիկունքը լայն, Ճակատը մեծ, ընքուիները սև, ու մազերը դեղինի կը զարնէր. ասոր հայրն էր Օսման Ա., որուն մեռնելէն ետև ինքը տեղը անցաւ 1326ին, և իրեն մեծ եղբայրն ալ որ Այլէտտին փաշայ կ'ըսուէր՝ իրեն վէզիր ըրաւ, ու ինքը արտաքին պատերազմաց հետ ըլլալով, եղբայրը Այլէտտին տէրութիւնը ծաղկեցընելու ետևէ եղաւ: Օրխան ստակ ալ կոխեց իր անունովը. և որովհետև իրմէ առաջ տաճկաց զօրքը գրեթէ բոլոր ձիաւոր էին, ինքը հետևակ զօրք ալ հաստատեց: Բայց երբոր զօրացը մէջ անկարգութիւններ սկսան մտնել, ան ատեն ուրիշ գունդ մը հաստատեց՝ որ բոլորն ալ քրիստոնէից տաճկըցած տղաքներն էին, ու զանոնք ԵՆԻՉԷՐԻ անուանեց որ՝ Նոր գունդ ըսել է.

ու պարապորդ կենաց վտանգներէն զիրենք ապահովելու համար, իրենց վրայ պարտք դրաւ որ պատերազմէ ազատ եղած ատեննին երկիր բանելու ու արուեստներու պարապին. անոր համար ալ իրենց ռոճիկը օրը մէկ փողէն աւելի չէր տար. բայց երթալով աւելցաւ աս իրենց ռոճիկը մինչև եօթը փող: Առաջ ատոնց թիւը տարուէ տարի հազարական հոգի կ'աւելնար, գերի ընկած քրիստոնեից տղոցմէն առնելով. բայց ետքերը երբոր իրենց ձեռքին տակը եղած քրիստոնեից տղոցմէն ալ առնուլ սկսան, թիւերնին խիստ շատցաւ: Իրենց դրօշակը կարմիր էր՝ վըրան լուսին ու Էօմէրի թուրը, որ Մահմէտի չորս յաջորդներէն մէկն էր: Աս զօրքերը կարգաւորելէն ետքը՝ Նիկիոյ վրայ յարձակեցաւ, որ ան ատեն Յունաց ձեռքն էր: Քաղաքացիները սովէ նեղուած, անձնատուր եղան. Օրխան խաղաղութեամբ քաղաքը մտնելով, ան հռչակաւոր եկեղեցին՝ որուն մէջ երկու տիեզերական Նիկիոյ ժողովքները եղեր էին՝ մզկիթ դարձուց. ետքը անոր մօտերը դպրոց ու աղքատանոց ալ կանգնեց, որուն մէջ երբեմն ինքն ալ կը ծառայէր կ'ըսեն: Ետքը իր Սուլէյման որդին Նիկիոյ քաղաքապետ դնելով, և ուրիշ տեղերու ալ պատերազմով տիրելէն ետև՝ սկսաւ իր թագաւորական քաղաքը Պրուսան զարդարել:

Յունաց Կոստանդին Կանտակուզենոս կայսեր հետ ալ խնամութիւն ըրաւ՝ Թէոդորա աղջիկը

տանելով, որուն համար Նաւկիւտար փառաւոր հարկիքներ եղան : Այս խնամութիւնը դուռ մը բացաւ Օրխանին՝ որ Յունաց Եւրոպայի մասին մէջ ունեցած երկիրները մտնէ. ու երբոր քանի տարիէն ետև խռովութիւն ելաւ Յունաց մէջ, Օրխանին որդին Սուլէյման փաշա, որ Ալայէտտինէն ետև վէզիր էր եղեր, լաստերով ու զօրքով աղին անցաւ ու Չէմէնլիք բերդը, Կէլիպօլու քաղաքը և ուրիշ տեղուանք ալ առաւ, ու հոն տաճիկներ բնակեցուց : Բայց Սուլէյման երկար ատեն չկրցաւ վայելել իր յաղթութիւնը. երկու տարիէն ետքը ձիէն իյնալով մեռաւ : Սուլթան Օրխան իր որդւոյն մահուանը վրայ սաստիկ ցաւելով, երեսունըհինգ տարի թագաւորելէն ետքը մեռաւ եօթանասունըհինգ տարեկան :





# ՍՈՒԼԴԱՆ ՄՈՒՐԱՏ Ա.

Այս Թագաւորը Օրխանայ պզտիկ որդին էր, որ Սիւլէյմանն իր մեծ եղբայրը մեռած ըլլալով հօրը մահուանէն ետքը ինքը անցաւ անոր տեղը 1361ին, ու եղբօրը քաջութեամբ առած սահմանները ալ աւելի ընդարձակեց։ Ինչուան ան ատենը սովորութիւն էր որ տաճկաց զօրքին հետ կ'երթար Պուրսայի դատաւորն ալ. բայց Մուրատ անոր տեղը զատ դատաւոր մը զօրքին վրայ դրաւ, որ անոր համար գատի ասքէր կամ ռամկօրէն գազասքէր կոչուեցաւ։ Մուրատ տաճկաց քաջ Թագաւորներուն մէկը եղաւ. Ետիրնէ ու Փիլիպպէ անուր քաղաքները առնելու ատեն այնչափ գերի առին զօրքը՝ որ հարիւր քսանըհինգ ստըկի կը ծախուէր մէկ գերին. անոր համար գերիներուն արժէքին հինգ մասին մէկը տուրք կ'առնէր անոնցմէ. անկէ մնաց փէնճիք անունը, որ հինգ ըսել է։

Մուրատ ամենեւին կարդալ գրել չէր գիտեր, անոր համար իր թշնամիներուն յաղթելէն ետքը հաշտութեան համար դաշնագիր ընելու ատենը՝ կնիքի տեղ ձեռքը թանաքի մէջ թաթխած թղթին վրայ կը տպէր․ «թուղրա» ըսուածը ան է, որ ետքը վարպետ գրագիրները աղուորցուցին, իրենց ատենուան թագաւորին ու անոր հօրը անունը մէջը խառնելով փակագրի պէս։

Ավլահ Պուղտանի մէջ ալ շատ բերդեր ու քաղքըներ առաւ Մուրատ, ու ան ատենէն է որ Մոլտաւիան Պուղտան ալ կոչուեցաւ, որովհետեւ ան ատեն հոն տիրող իշխանին անունը Պօղտան էր, այսինքն Աստուածատուր։

Մուրատ ուրիշ շատ քաղքըներ ալ առաւ, ու երեսունեօթը յաղթութիւն կանգնեց։ Իր մեծ ուժը ու թեւթիկունքը Խայրէտտին փաշան էր, որ քսանըեօթը տարուընէ 'ի վեր իրեն կ'օգնէր խորհրդով ու բազկաւ, իր հօրը Օրխանին ալ նոյնպէս ծառայեր էր երեսունըհինգ տարի, շատ տարի ալ Օսմանին որ իր պապն էր․ անանկ որ հարիւր տարուան ծերութեան ատենն ալ իր խելքէն թշնամիները կը սարսափէին։ Ասոր ետեւոր Խայրէտտին մեռաւ, թշնամեաց գլխաւորը՝ որ էր Ալայէտտին Գարամանի թագաւորը Մուրատին փեսան, իր աներոջը դէմ պատերազմ բացաւ, ու Պոսնիայի մօտ երկու կողմէն շատ զօրքով բանակեցան։ Մուրատ անանկ վարպետ կերպով շարեց իր զօրքը, որ տաճկըներուն օրի-

նաւ եղաւ անկէ ետքը ամէն պատերազմի մէջ անանկ շարելու. Ինքը բանակին մէջտեղն էր, ենիչէրիները առջեւէն, որդին աջ թեւին զօրավար, ձախ թեւին ու ետեւին ալ ուրիշ երեւելի զօրավարները։ Սաստիկ զարնուելէն ու շատ մեծ ջարդ ընելէն ետեւ պաշարեցին Կոնիա քաղաքը։ Ալայէտտին խոնարհեցաւ, խրկեց իր կինը՝ որ էր Մուրատին աղջիկը՝ որ հաշտութիւն ընէ։ Մուրատ ընդունեցաւ աղջկանը աղաչանքը, ու հրամանն տուաւ որ գայ թագաւորը իր ձեռքը պագնէ, ու ամէն առած տեղուանքը նորէն իրեն բաշխեց։

Սերպերն ալ ոխ ունէին Մուրատին դէմ, ու երբոր տեսան որ պատերազմներէ յոգնած էր, ու Բուլղարաց հետ ալ դեռ պատերազմի մէջ էր, սիրտ առին, ու իրենց հետ միաբանելով իրենց նիզակակիցներն ալ՝ Պոսնացիները, Արնաւուտները, Լեհերը ու Մաճառները, պատերազմ բացին, ու Կոսովա դաշտը՝ Պոսնայի հարաւակողմը դիմացէ դիմաց կեցան։ Հետեւեալ օրը սկսաւ պատերազմը. հոն տեղը ստացաւ Պայէզիտ Մուրատայ որդին Եըլտըրըմ մականունը, իր կայծակի պէս թշնամեաց զօրքը զարնելուն համար։ Նոր օրինակին հետեւեցան ամէն զօրքն ալ, անանկ որ արիւնլուայ ըրին դաշտը, ու Սիթնիցա գետը՝ որ դաշտին մէջէն կ՚անցնէր՝ արեան գոյն դարձաւ։ Սերպերը ուժով յաղթելէն յուսերնին կտրեցին. իրենց մէջէն մէկը Միլոշ Կոպիլովիչ անունով՝ մեռած ընկած դիակներուն վրայէն վազեց եկաւ ենիչէրի-

ներուն ձայն տալով՝ որ թագաւորին հետ խօսք մը ունիմ. թագաւորն ալ նշան տուաւ որ թողուն զինքը : Մ՝իլոշ թագաւորին ոտքը պագնելու պէս ծռելու ատենը, թուրը փորը խոթեց. թիկնապահները վրայ վազեցին, ինքը անոնցմէ շատն ալ զարկաւ մեռուց, բայց ետքը ետքը անոնց բազմութենէն յաղթուեցաւ. իր մարմինը կտոր կտոր ըրին, ու զէնքն ու զրահները՝ իրն ալ ու իր ձիունն ալ կ՚ըսեն թէ Կոստանդնուպօլսոյ զինարանին մէջ պահուած է մինչև հիմա :

Իսկ Մ՝ուրատ թէ և ծանր վիրաւորուած էր, բայց դեռ չմեռած՝ պատերազմին յաղթութեանը աւետիսը լսեց, ու Սըրփերուն Լազար թագաւորը գերի իր ոտքը բերած տեսաւ, ու ետքը աչուըները գոցեց : Յօթանասունըմէկ տարեկան մեռաւ՝ երեսուն տարի թագաւորելէն ետքը. մարմինը թաղեցին Պուրսա մեծ մզկիթին մէջ՝ որ ինքը շիներ էր, որովհետև իր կրօնքին նախանձաւոր էր, ու առանց աղօթքի բանի մը ձեռք չէր զարնէր :





# ՍՈՒԼԹԱՆ ՊԱՅԷԶԻՏ Ա.

ՊԱՅԷԶԻՏ Սուլթան առաջինին որդին էր որ 1389ին անցնելով իր հօրը աթոռը քաջութեամբն ու խելքովը ընդարձակեց օսմանեան տէրութիւնը։ Ասիոյ մէջ շատ յաղթութիւններ ընելէն ետքը միտքը դրաւ Յունաստանի կղզիներն ու Կոստանդնուպօլիսն ալ ձեռք ձգելու. ուստի վաթսուննաւով Քիոս կամ Սագըզ կղզին անցնելով, բոլոր երկիրը այրեց աւերեց։ Նմանապէս Թրակիոյ, Բուլղարներուն, Սլաւոններուն, Պոսնացիներուն ու Մաճառներուն երկիրը շատ զօրք խաւրելով, ամէն տեղ աւըրշտըկեց։ Պայէզիտ այսչափ յաղթութիւններով ինքն իրմէ դուրս ելած՝ սկսաւ անհոգ ըլլալ իր կառավարութեանը մէջ. ու տաճկաց օրէնքին հակառակ՝ ինքզինքը խումի տը-ւաւ։ Բայց ետքը երբոր տեսաւ որ բոլոր իշխաններն ու ժողովուրդն ալ իրեն հետեւելով անօրէնութիւնները կը շատնային, սկսաւ սաստիկ պատիժ սպառնալ յանցաւորներուն։ Օր մը ութ-

տուն դատաւոր մէկէն այրել ուզեց՝ անոնց անիրաւութեանը ու կաշառք առնելուն համար. իր ծաղրածուն դիմացը ելաւ, ու խնդրեց որ զինքը դեսպան ղրկէ Կոստանդնուպօլիս. Պայէզիտ երբոր պատճառը հարցուց, ծաղրածուն պատասխան տուաւ. Որպէս զի Յունաց կայսրէն ութսուն հատ իմաստուն աբեղայ բերեմ, որ անտեղէս դատաւորներուն տեղը դնենք: Թագաւորը հասկըցաւ միտքը՝ որ անոնց կաշառք առնելուն ու անիրաւութիւն ընելուն պատճառը կարգաւորեալ թոշակ չունենալնին էր, ու սահմանեց որ ամէն դատաստանէն հարիւրին երկուքը դատաւորին տրուի: Ինքն ալ անկէց ետև բոլորովին խումը դադրեցուց. և որպէս զի ժողովրդեան ալ բարի օրինակ տայ, Պուրսայի մէջ երկու մզկիթ շինեց, և Եգիպտոսի ամիրապետէն խընդրելով՝ ինքը եղաւ առջի անգամ Սուլթան անունը առնողը:

Սաճաններուն թագաւորը Օրխանոս՝ հաշտութիւն ընելու համար դեսպան ղրկեց Պայէզիտին. բայց երբոր Պայէզիտ յանձն չառաւ հաշտուելու, Օրխանոս Պաղդիացւոց և Ալահնէրուն հետ մէկ եղած՝ պատերազմի ելաւ: Առջի բերան Պաղդիացիք մեծ ջարդ տուին Ենիչէրիներուն, ու զանոնք փախուցին ինչուան իրենց մօտիկ բլուրը. բայց երբոր բլուրին անդիի կողմը Տաճկաց սոսկալի բանակը տեսան, վախնալով ետ քաշուեցան, ու Սաճաններուն թագաւորին

ալ Կոստանդնուպոլիս փախաւ ։ Պայէզիտին աչքն ալ շատոնց ան քաղաքին վրայ էր, ուստի նորէն զրկեց իր վէզիրը Ալի փաշան որ մինչև քաղաքին դուռը հասնելով՝ Յունաց Յովհաննէս կայսրը նեղը խոթեց, ու քաղքին մէջ մզկիթ մը ու տաճկի ատեան կանգնել տուաւ. քիչ ատեննէն ալ բոլոր Յունաստանի ու Մօրայու տիրեց Պայէզիտ ։ Բայց պէտք եղաւ որ շուտով Ասիա դառնայ, որովհետև Լէնկթիմուր Թաթարաց խանը սկսեր էր անոր երկիրները աւրըշտըկել, ու Սեբաստիա քաղքին ալ տիրեր էր ։ Ասոր շուտով պատերազմի պատրաստուեցան երկու կողմէն ալ բիւրաւոր զօրքերով ։ Պայէզիտի բանակին մեծ մասը թշնամեաց կողմն անցաւ, շատն ալ ջարդուեցան, ինքն ալ փախչելու ատեն՝ ձիուն հետ գլորեցաւ, Թաթարաց ձեռքը գերի ընկաւ ։ Առջի բերան Լէնկթիմուր շատ պատիւ ըրաւ իրեն, ու իրեք փառաւոր վրաններ տուաւ՝ որ հանգիստ բնակի. բայց երբոր իմացաւ որ տաճիկները գետնի տակէն ճամբայ բացեր են՝ զանիկայ ազատելու համար, հրամմեց որ գիշերը ոտքին շղթայ զարնեն, ու աղէկ պահպանութիւն ընեն վրան ։ Եւ որովհետև խուցին դուռը երկաթ վանդակ էր, անկէց լսուեցաւ թէ Լէնկթիմուր զՊայէզիտը վանդակի մէջ դրեր է ։ Այսպէսով Պայէզիտը գերութեան մէջ՝ քառասունըչորս տարեկան մեռաւ 1403ին, ու Լէնկթիմուրին հրամանաւը Պուրսա քաղքին մէջ թաղուեցաւ ։



# ՍՈՒԼԴԱՆ ՄԷՀԷՄՄԷՏ Ա.

ՍՈՒԼԴԱՆ ՄԷՀԷՄՄԷՏ 1413ին. Թագաւորեց. ու անանկ աղուոր մարդ մըն էր որ անոր համար իր մականունը Չէլէպի կոչուեցաւ. բայց իր արդարութիւնը, առատաձեռնութիւնը ու անուշ բնութիւնը ա՛լ աւելի սիրելի ըրին զինքը, ոչ միայն իր ազգին՝ այլ և իր քրիստոնեայ հպատակներուն։ Իր խաղաղասիրութիւնը ան աստիճանի կը հասնէր, որ Եւրոպական տէրութեանց դեսպանները ընդունելու ատենն ըսաւ անոնց որ գրեն իրենց թագաւորներուն, թէ ինքը ամենուն հետ խաղաղութիւն կ'ուզէ ընել, ու ամենէն խաղաղութիւն կը խնդրէ. իսկ խռովութիւն հանողին դատաստանը՝ Աստուած խաղաղութեան ընէ։ Բայց որչափ խաղաղասէր էր, կարծես որ այնչափ աւելի պատերազմ եղաւ իր օրը, որոնց գլխաւորները էին Գարամանի իշխանին հետ, Մենետկեցւոց հետ, Լեհացւոց, Մաճառներուն, Թաթարներուն հետ։ Ասոնցմէ 'ի զատ նաև իր ազգէն ալ նոր աղանդաւորներ իրեն դէմ ելան, որոնց

դէմ շատ պատերազմեցաւ ինչուան որ յաղթեց։ Բայց ամենէն սաստիկ պատերազմ իրեն դէմ Տիւզմէ Մուսդաֆայինը եղաւ։

Մէհէմմէտին մեծ եղբայրը Մուսդաֆա՝ Գողատիայի մօտ պատերազմի մը մէջ անյայտ եղեր էր, ոմանք կ՚ըսեն թէ մեռեր էր, ուրիշները թէ փախեր էր։ Ու Տիւզմէ Մուսդաֆա ըսածնիս դուրս ելաւ՝ ըսելով թէ ինքը ան Մուսդաֆան էր՝ Պայեզիտի մեծ որդին, հօրը աթոռին օրինաւոր ժառանգ. ու կան պատմիչներ ալ որ իրաւ ան էր կ՚ըսեն։ Իրաւ ըլլայ՝ սուտ ըլլայ, ասոր հետ միացան շատերը, ու մեծերէն ալ ոմանք։ Մէհէմմէտ անոր դէմ ելաւ ու Սելանիկի մօտ յաղթեց ու ցրուեց անոր զօրքը։ Մուսդաֆան Սելանիկ փախաւ, որովհետև ան ատենը Սելանիկ Հոռոմներուն ձեռքն էր, ու ան ատենի կայսրն ալ Մանուէլ՝ շատ բարեկամ էր Մէհէմմէտին։ Իրաւ տաճկաց թագաւորը անոր օգնութեամբը ժառանգեր էր իրեն հայրենի աթոռը, բայց ինքն ալ թագաւորածին պէս անոր տուեր էր Սև ծովուն՝ Թեսաղիայէն ու Մարմարայէն բերդերը, ու անլոյծ դաշն բարեկամութեան դրեր էին մէկմէկու հետ. անոր համար Մէհէմմէտ ուզեց կայսրէն իր թշնամին։ Դըժուարին էր չէ ըսելը. բայց խելացի թագաւորի մը ծանր չիգար պարտք եղած խօսքը ըսել, թէ և իրեն կամացը դէմ ըլլայ։ Կայսրը անուշութեամբ իրեն իմացուց որ հաւատարմութեան դէմ էր առ-

ինքն ապաւինած մարդը մատնել. բայց երդու-մով խօսք տուաւ՝ որ չթողու Մուստաֆան ա-զատ։ Մէհէմմէտ համաձայնեցաւ կայսեր ըսածին, ու մանաւանդ ինքը կը խրկէր Մուստաֆային ապրուստը։

Այս յաղթութենէս ետքը շատ տարի չանցաւ՝ Մէհէմմէտ ձիով Ադրիանէ դառնալու ատենը կա-թուածով մը ձիէն վար ինկաւ։ Առին զինքը Ա-դրիանէ տարին. ու երբոր մեռնելու վրայ էր, կան-չեց իր հաւատարիմ վէզիրը Պայէզիտ, որ շատ քաջ մարդ էր, ու իր աջ բազուկը եղեր էր պատերազմ-ներու մէջ. անոր յանձնեց իր որդին Մուրատը՝ որ զինքը թագաւորեցընէ։ Բայց որովհետեւ Մուրատ Անատոլուի փաշա էր, մտածեց Պայէ-զիտ որ թագաւորին մեռնիլը ծածկէ՝ մինչեւ որ իմացընեն Մուրատին որ գայ թագաւորէ։ Անոր համար կ'ուզէր զօրացը կէսը Ասիա խրկել նոր թագաւորին կողմը զօրացընելու համար. բայց ենիչէրիները, մինչեւ որ թագաւորը չտեսնենք՝ չենք երթար ըսին։ Նեղը ինկաւ Պայէզիտ, բայց ճարպիկ բժշկի մը խորհրդովը նստուց մեռելը հագուեցուցած մութ պատու-հանի մը ետեւ, ու հաւատարիմ ծառաներուն մէկը մեռելին ետեւը կեցած՝ մուշտակին տա-կէն թեւը կը շարժէր բարեւ տալու պէս։ Ենի-չէրիներուն ալ անանկ հասկըցուց որ թագաւորին առողջութեանը վնաս էր օդ առնելը, բժիշկները արգիլեր էին. ասանկով ենիչէրիները գոհ ե-

ղան ու Թագաւորին երկար կեանք մաղթելով ելան գնացին Ասիա ։ Քառասուն օրէն դարձաւ սուրհանդակը որ Ամասիա գնացեր էր, ու Մուրատին Պուրսա հասնիլը ու Թագաւորելը ու Մէհէմմէտին մահը մէկտեղ իմացուեցաւ ։ Աս Թագաւորներուն մահը ծածուկ պահելու սովորութիւնը ան ատենէն մնաց, ու երկայն ժամանակ քշեց՝ շատ անգամ յաջորդին հեռու գտնուելուն պատճառաւը, որպէս զի մինչեւ որ գայ՝ խռովութիւն մը չըլլէ․ բայց ետքը երբոր սովորութիւն եղաւ Թագաւորին ժառանգ որդին պալատը գոցած պահել, առջի սովորութիւնը վերցուեցաւ ։

Մէհէմմէտ երեւելի շինուածներ թողուց, որոնցմէ մէկն էր Էտիրնէի մեծ մզկիթը՝ Ուլու Ճամի ըսուած, ու Պուրսայի Եշիլ իմարէթ մզկիթը, որուն գմբէթները ու մինարէները առաջուց կանաչագոյն չինիներով պատած ըլլալուն համար Եշիլ կոչուեցաւ ։ Աս մզկիթին քովը Մէհէմմէտին հոյակապ շիրիմ մը շինեցին, ուր որ մեռնելէն ետեւ մարմինը Էտիրնէէն մեծ հանդիսով ու շատ զօրքերով բերեր էին ։ Քառասունուերեք տարուան էր Մէհէմմէտ երբոր մեռաւ․ ութը տարի միայն Թագաւորեց ։ Իր մեծ պարծանքներուն մէկն ալ, որ միանգամայն իր Չէլէպի անուանը արժանի ախորժակ ունենալը կը ցուցնէ, ան է որ՝ իր օրը սկսաւ տաճիկներուն մէջ գիտութիւնը ծաղկիլ, ու գիրք գրողներ ելան ։



# ՍՈՒԼԴԱՆ ՄՈՒՐԱՏ Բ.

ՍՈՒԼԴԱՆ Մուրատ Բ. 18 տարուան էր երբ որ իր հօրը Մէհէմմէտին տեղը անցաւ 1421ին։

Ներկայ տաճկի թագաւորաց մէջ երևելի աշխարհակալներէն մէկը եղած է. բռած պատերազմներն ու յաղթութիւնները անթիւ են. բայց անոնց մէջ ալ երևելիները Կոստանդնուպօլսոյ ու Թէսաղոնիկէի պատերազմներն ըլլալով՝ կ'արժէ որ հոս տեղս անոնց վրայ քիչ մը աւելի տեղեկութիւն տանք։ Սուլդան Մուրատ թագաւոր եղաւ չեղաւ՝ Յունաց Մանուէլ կայսրը դեսպան ղրկեց իրեն, պահանջելով անոր երկու եղբայրքը՝ պատանդի տեղ, ինչպէս որ սուլդան Մէհէմմէտ ապսպրեր էր. միանգամայն կը սպառնար՝ որ եթէ իրեն աս կամքը չկատարէ, ան ատեն ինքն ալ Տիւզմէ Մուստաֆան Պայէզիտի որդին կ'արձըկէ որ երթայ իրեն վրէժը առնու.

Մուրատ աս բանս յանձն չառնելուն, Յունաց կայսրը իր սպառնացածը ըրաւ. և իրաւցընէ Մուստաֆան Ճիւնէյտ անունով անզգամի մը հետ Մուրատին և իրեն տէրութեանը շատ նեղութիւն հասցընելէն ետև, վերջապէս յաղթուեցաւ ու անոր ձեռքը գերի ընկաւ։ Բայց տուղան Մուրատին աս բանին համար սիրտը այրած ըլլալով, քսան հազար զօրքով Կոստանդնուպօլիս անցաւ, և բոլոր քաղաքին մօտ եղած երկիրները աւրըշտըկելով ու մարդիկը գերելով, եկաւ քաղաքը պաշարեց. և զօրքը գրգռելու համար ըսաւ թէ բոլոր քաղաքը ձեզի աւար ըլլայ։ Քաղաքին մէջ մարդ չէր մնացած, և ամէնքը պարիսպներուն վրայ վազեր թշնամեաց հետ կը կռուէին. ինչուան նաև կանայքն ու տղաքը։

Բայց իրիկուան դէմ լուր հասաւ Մուրատին թէ իր պզտի եղբայրը թագաւորել կ՚ուզէ Նիկիոյ մէջ. ուստի մէկէն պաշարումը թողուց ու Նիկիա դարձաւ, և հոն իր եղբայրը բռնեց ու կախել տուաւ։

Թեսաղոնիկեցիք Օսմանցւոց յարձակմունքներէն ձանձրացած, իրենց քաղաքը Վենետիկեցւոց ծախեր էին։ Մուրատ աս բանիս սաստիկ բարկացած, ղրկեց Համզա պէյը՝ որ քաղաքացիները նեղը խոթելով նուաճէ, խոստանալով որ եթէ անձնատուր ըլլան՝ իրենց չվնասեր։ Բայց ետքը տեսնելով որ աս խոստմունքը անօգուտ եղաւ, զօրացը սիրտ տուաւ, ու խոստացաւ որ բաց ՚ի

քաղաքին գետնէն աւելին բան խորենց թողուց : Ն.ժ-
սու անմնայնիւ շատ դժուարութեամբ կըցաւ առ-
նուլ այն քաղաքը . որովհետեւ բնակիչները պա-
րիսպներուն վրայ ժողվուած՝ վեր ելլել ուզողները
քարերով կը հալածէին : Սակայն ի տեսարան էր ,
երբոր այն գազանի պէս զօրքը քաղաքին մէջը
յարձակեցան ու աւելին բան պղծելով թալլելով ,
մարդիկներ ալ բոլոր գերի կը տանէին : Վերջապէս
Մուրատ տեսնելով որ բոլոր քաղաքը աւերակ
դարձեր է , հրամմեց որ գնուած գերիները դար-
ձեալ հոն տեղը բնակին : Եկեղեցիներէն շատը
տեղէն փլուցեր էին , մնացածներն ալ մզկիթ ու
բաղնիք դարձուցին :

Սուլթան Մուրատ Վլահներուն , Սրպերուն
ու Արնաւուտներուն հետ ալ շատ պատերազմներ
ընելէն ետքը , վերջապէս անոնց հետ հաշտու-
թիւն ընելով՝ կը Մէհէմմէտ որդին կը տեղը
դրաւ ու ինքը Մաղնեսիա քաշուեցաւ : Բայց
երբոր լսեց թէ հաշտութիւն ընողները երդմուն-
քը ոտքի տակ առնելով՝ իրեն երկիրները սկսեր
են կոխել , անհամբեր զօրքով նորէն պատերազմի
պատրաստուեցաւ . ու մեծ ջարդ ընելէն ետքը՝ կը
զօրքը Արնաւուտներուն Սլատխալա թագաւորին
գլուխն ալ կտրեցին , ու թագաւորին բերին . այն
ալ Պուրսայի քաղաքապետին դրկեց , իրեն ըրած
յաղթութեան նշան : Անկէց ետեւ Մօռայի վրայ
յարձակելով , Կորնթոս քաղաքը առաւ , ու բոլոր
երկիրը իրեն հարկատու ըրաւ : Անկէց Ալպանիա

անցաւ հարիւր հազար զօրքով՝ Իսկէնտէր անու-
նով իշխանին վրայ. բայց երբոր զանիկայ չկրցաւ
ձեռք ձգել, տրտմութեամբ Ատիրնէ դարձաւ ու
հոն տեղը կաթուածէ զարնուելով մեռաւ 49
տարուան, 30 տարի թագաւորելէն ետև։





# ՍՈՒԼԹԱՆ ՄԷՀԷՄՄԷՏ Բ.

Օսմանեան թագաւորներուն մէջ քիչ եղաւ ասոր պէս զօրաւոր ու միտքը դրածը առաջ տանող։ Իր կերպարանքը ահաւոր էր, հասակը հըսկայաձև, դէմքը համեմատ, քիթը երկայն, աչուըները խիստ։ Թագաւորեց 1451ին, ու ան օրէն միտքը դրաւ Կոստանդնուպօլիսը առնելու։ Պզտիկ կայծ մը՝ մեծ կրակներ կը բորբոքեցընէ. Օրխան Մէհէմմէտին ազգականներէն մէկը՝ իր թշնամին՝ Պօլսոյ մէջ ապաստանած էր, որուն Մէհէմմէտ ռոճիկ խոստացեր էր ղրկել։ Նոյն ատենի կայսրը Կոստանդին Պաղէոլոգ իրեն դեսպան ղրկեց որ խոստմունքը կատարէ, և սպառնալիք ալ ըրաւ որ՝ եթէ ռոճիկը չվճարես Օրխանը կ'արձըկեմ։ Թագաւորը յանձն առաւ՝ Ադրիանէ հասնելուն պէս ղրկել ռոճիկը, բայց միտքը պահեց աս բանը։

Ան ատենէն սկսաւ Պօղազ իչին բերանը Եւ-րոպայի կողմը ամրացընել, հազար որմնադիր ժողվեց՝ Պօղազքեսէն կամ Ռումէլի Հիսարը ը-սուած բերդը շինելու։ Այսորը սկսաւ մտածել, դեսպան ղրկեց սուլտանը առնելու, ու չէնքը դադ-րեցընելու. բայց կրակը առած էր, Մէհէմմէտ պատասխանեց որ իմ երկրիս մէջ տէր եմ բերդ շինելու, ու սկսաւ պատրաստուիլ Կոստանդնու-պօլիսը պաշարելու։ Մեծ թնդանօթ մը շինել տուաւ, որուն բերանը տասուերկու քիլ էր, ու ռումբը մղոն մը հեռուն կը ձգէր։ Յիսուն զոյգ եզներով սկսաւ փոխադրել թնդանօթը Ադրի-նէէն Պօլիս, ամէն կողմերէ զօրք հանեց Պօլսոյ վրայ, ու եկաւ հասաւ ինքն ալ՝ Եյրի գափուին դիմացը իջաւ։ Հրամմեց քաղաքը պաշարել 250 հազար զօրքով, մեծ թնդանօթն ալ սուրբ Ռո-մանոսի դրանն առջին տեղաւորել տուաւ, ուստի անկէց ետքը այն դուռը Թօփ գափու ըսուեցաւ։ Ուրիշ թնդանօթներն ալ ու մեքենաները ամէն դին շարեց, ծովէն ալ 420 նաւ ղրկեց, որոնց առաջնորդ էր Պալթա անուանով Պուլղար մը. ու նոր համար նաւերուն կեցած տեղը մօտիկ գեղը Պալթա լիմանը կոչուեցաւ։

Թէպէտ Յոյներն ալ ներսէն դրսէն պատրաս-տութիւն կը տեսնային, ու յոյսերնին Ճենովա-ցւոց օգնութեանը վրայ դրեր էին, բայց տաճկը-ներուն պատրաստութիւնը քանի անգամ աւելի էր։ Մէհէմմէտին մեծ վախը այն էր որ Յոյնե-

րը ահագին շղթայ մը ձգեր էին Կոստանդնու-պօլսէն մինչև 'ի Գալաթիա ծովուն երեսը, ու անկարելի էր նաւով ներս մտնելը ։ Ջենովայէն օգնութիւն գալու ատենն ալ նաւամարտ մը բռն-կեցաւ. ու թէպէտ Թուրքը ամէն հնարք բանեցուց Ջենովացւոց նաւերը արգիլելու, մինչև ձիովը հանդերձ ծովուն մէջը ցատքելով իր զօրացը հետ, բայց աս իր կարգէ դուրս սրտոտութիւնն ալ չօգ-տեց, Յոյները շղթան թուլցուցին, Ջենովացիքը ներս մտուցին ։ Աս փորձը՝ որ իր մեծ վնասովը եղաւ՝ իրեն խելք սորվեցուց. տեսնելով որ ծո-վուն վրայ ձիավարելը չյաջողեցաւ՝ նաւերը ցա-մաքի վրայ քալեցընելու ձեռք զարկաւ ։ Պէշիք-թաշէն մինչուան Պօլսոյ նաւահանգիստը Գա-լաթիայի ետևէն երկու ժամ ճամբայ՝ լեռ-ներու ու ձորերու վրայէն հաստ տախտակներէ կամուրջ շինեց, ու ճարպով օծելէն ետքը՝ որ նա-ւերը սահին վրայէն, եօթանասուննէն աւելի խոշոր նաւեր մէկ գիշերուան մէջ փողերով թմբուկներով քալեցուց ։ Առտուանց կանուխ Յոյները ափշեցան մնացին, երբոր տեսան որ նաւերը ցամաքէն ծո-վը իրենց նաւահանգստին մէջը կը թափէին ։ Թէպէտ Ջենովացիք ուզեցին կրակ տալ նաւե-րուն, ու հարիւր յիսուն իտալացի զօրք նաւով մը մօտեցան անոնց, բայց թնդանօթ մը իրենց խոր-հուրդն ալ նաւն ալ զիրենք ալ ծովուն տակը ին-ջեցուց, ու հազիւ իրենց զօրավարը Յուստի-նեան լողալով ապրեցաւ ։

Նաւակով քաղաքը ծովէն ալ պաշարելէն ետև, դեսպան ղրկեց կայսեր, խոստանալով հաշտութիւն ընել՝ թէ որ յանձն առնու հպատակիլ: Կայսրը պատասխանեց՝ թէ բոլոր ընտանեօքս ու հպատակներովս կը մեռնիմ, քաղաքս չեմ տար: Նոյն ատեն Մէհէմմէտ կանչեց բոլոր զօրքը, ու ըսաւ. Պարխսպներէն ու տներէն զատ ամէն բան ձեզի, ձեզ նայիմ՝ քաղաքը պիտի առնէք: Ինչ քաղաք եղած է, որուն առումը ասանկ զարհուրելի տեսարան մը եղած ըլլայ. գոռում գոչում, փող, թմբուկ, քարերուն կարկտի պէս թափիլը, հրացաններուն կրակը, թնդանօթներուն որոտումը, արիւնին վազուածքը, աղբը, լացը, ամէնքը մէկտեղ խառնուած, դատաստանի օր ըլլին ան օրը. փողին ու վառօդին մուխը միայն ան խեղճ ու սիրտ չդիմանալու տեսարանը կը ծածկէր: Կայսրը յուսահատած՝ իր մահը փնտռելով, մտաւ Տաճկըներուն մէջ. ու շատերը ջարդելէն ետքը, թևերը վար ընկած՝ սկսաւ խեղճ ձայնով մը կանչել. Մէկ քրիստոնեայ մը չկա՞յ որ իս զարնէ մեռցնէ: Խօսքը դեռ չլմնցուցած երկու ենիչէրի առջևէն ու ետևէն զարկին լմընցուցին իրեն հետ Յունաց կայսերութիւնը. ու Մէհէմմէտ 1453ին, մայիսի 29ին մտաւ մեռելներուն դիակներուն վրայէն Կոստանդնուպոլիս քաղաքը ու շիտակ սրբուհւոյն Սոփիայի եկեղեցին ինջու կէսօրուան նամազը կատարեց:

Աս պատերազմը միայն բաւական է ցուցնելու

Մէհէմմէտին ինչ մարդ ըլլալը, տեսանց պատմե-
լու կը ուրիշ Սերբերուն, Արնաւուտներուն,
Ուլահներուն, Մաճառներուն, Պօսնացւոց, Ճե-
նովայեցւոց, Վենետիկեցւոց, և ուրիշ ազգաց դէմ ը-
րած պատերազմներին ու յաղթութիւնները: Բո-
լոր Յունաստանի տիրեց, Կորնթոս առաւ, Մո-
րեա հարկատու ըրաւ, Աթէնայ ու Տրապիզոն ալ
առնելով՝ բոլորովին Յունաց իշխանութիւնը ու
Կոմնենեան կայսերաց ցեղը ջնջեց, ու բոլոր Կա-
պադովկիայի տիրեց: Վերջապէս եօթը մեծա-
մեծ տէրութիւններ, ու երկուհարիւրէն աւել
քաղաքներ պատերազմով առաւ. մինչև Վենետ-
կեցւոց ու Նափոլիի տէրութեան մէջ ալ ոտքը
դրաւ, որով Եւրոպայի տէրութիւններն ալ
սկսան վախնալ. անոր համար իր մահուանը ը-
նտեցաւ Փաթիհ, այսինքն է Աշխարհակալ:
Բայց իր անգթութեանը չափ չկար, երդումն
ալ չէր պահեր, ու իրեն անձնատուր եղողներուն
ալ չէր խնայեր: Կաֆէ քաղաքը առնելու ատեն
մեր ազգին անմեղ կտրիճներն ալ խաբէու-
թեամբ թրէ անցուց: Մէհէմմէտս աղէկ հասկը-
ցեր էր՝ որ յաջողութեան հոգին գաղտնիքն է, միտ-
քը մէկու մը չէր յայտներ. կ'ըսէր որ՝ եթէ մօրու-
քիս մէկ մազը միտքս իմանայ, կը խլեմ՝ կրակը կը
ձգեմ: Օրք կը ժողվէր, բանակ կը հանէր, և
ուր յարձակիլը չէր գիտցուեր: Ասանկ 1481ին
ալ շատ զօրքերով Ուսկիւտար անցաւ, մէկը չէր
գիտեր ուր դիմելը: Ուսկիւտարէն ճամբայ ելած

ատենը քիչ մը տկար էր, ետքը ծանրացաւ հիւան-
դութիւնը, ու մեռաւ Նիկոմիտի մօտ գաւառի մը
մէջ 62 տարուան, 30 տարի թագաւորելէն
ետքը ։ Իր մարմինը թաղեցին Պօլիս իր հիմ-
նած մզկիթին մէջ ։

Աշխարհակալութեան բաղձանքը աշխարհք-
ներ կործանել տուաւ իրեն. բայց ինքը բնու-
թեամբ աշխարհաշէն մարդ էր ։ Ինքը շինեց
Մարմարայի բերդերը ու Եօտի գուլէի անդոցը.
ինքը շինեց Սարայ Պուռնուի պարիսպները, որուն
շրջապատն է չորս մղոն, ու եօթը դուռ ունի. շի-
նեց նաեւ Էյուպի մզկիթը, ուր որ իրենց մարգա-
րէին գրօշակիրը Խալիտ Էյուպ թաղուած էր. ու
իր անուանովը Սուլթան Մէհէմմէտ Ճամիսի ըսուած
մզկիթին ալ հիմը ինք դրաւ, ուր որ թաղուեցաւ ։
Ասոնցմէ զատ, աղքատանոց, դպրատուն, խան,
աղբիւրներ, բաղնիքներ և ուրիշ մզկիթներ ալ
շինելովը զարդարեց նորէն Կոստանդնուպօլիս քա-
ղաքը, որ առնելու ատենը աւերակ դարձուցեր էր ։
Եւ որովհետեւ 40 հազարի չափ մարդ ջարդեց
հօն, 60 հազարի չափ ալ գերի ըրաւ, փախչողնե-
րուն ալ թիւ չկար, քաղաքը անապատ դարձեր
էր. անոր համար ուրիշ երկիրներէ գաղթական-
ներ բերաւ բնակեցուց հօն, որոնց մէջը մեր
ազգէն ալ շատ տնուորներ կային ։ Յովակիմ
եպիսկոպոս Պուրսայի առաջնորդն ալ Պատրիարք
դրաւ, որուն յաջորդութիւնն է որ կը տեւէ մին-
չեւ հիմա ։

Սուլտան կռուելնէ ալ հանճարը պակաս չէր, բայց գիտութիւնները զինուց թշնամի են, խաղաղութիւն կը սիրեն։ Այսու ամենայնիւ դպրոցներ շինեց, ու խնամատարները կը յորդորէր՝ որ ազգէ ալ ըլլային. կ՚ըսեն թէ լեզուներ ալ գրոտած ըլլայ։ Դպրոցներուն մէջը ուսման կարգ ալ դրաւ, ու վարժապետներուն ալ առատ վարձք սահմանեց. ասոր համար իր օրը մատենագիրներ շատ ելած են Տաճիկներէն։ Օրէնքներ ալ դրաւ, որ մինչև հիմա կը պահուին, ու գրքին անունը կ՚ըսուի Գանուննամէի սուլթան Մէհէմմէտ։





# ՍՈՒԼԴԱՆ ՊԱՅԱԶԻՏ Բ.

ՍՈՒԼԴԱՆ Պայեզիտ դէմքով իր հօրը սուլդան Մէհէմմէտին շատ կը նմանէր, իսկ բարքով կրնանք ըսել բոլորովին հակառակ. իր վարքին մէջ կը տեսնենք որ առանց վերջին հարկաւորութեան արտաքսում չէր ըներ: Հօրը մեռած ժամանակը ինքը Ամասիա գտնուելուն համար, որպէս զի խռովութիւն մը չելլէ, իր վէզիրը սուլդան Մէհէմմէտի դիակը կառքի մը մէջ նստեցընելով այնպէս մը ձեւացուց, իբրեւ թէ հիւանդութեան համար Սկիւտարէն Կոստանդնուպոլիս կը դառնայ՝ բաղնիք մտնելու համար: Ասոր ալ կերպով ինչուան որ մարմինը Պօլիս հասաւ՝ Պայեզիտին ալ 14 օրէն հոն հասնելով, մեծ ուրախութեամբ զինքը ընդունեցան, ու առջի գործքը իր հայրը թաղելն եղաւ:

Իրեն մեծ թշնամին եղաւ իր Ճէմ եղբայրը, որ

շատ խռովութեանց և պատերազմներու պատճառ ըլլալէն ետքը՝ փախաւ անցաւ Եւրոպա, առաջ Պօղոսի Թագաւորին քովը, ետքը Աղեքսանդր Զ. պապային, որ ուզեց զանիկայ իր եղբօրը սուլդան Պայէզիտին հետ հաշտեցընել. Պայէզիտ այնչափ կակըղցաւ որ ինչուան Թոշակ ալ կապեց եղբօրը. բայց իրեն դրկած դեսպանը օր մը Թունաւոր ածելիով ածիլելու ատեն Ջեմին փողը քիչ մը վիրաւորեց. ան վէրքէն վախճանեցաւ:

Սուլդան Պայէզիտ շատ պատերազմներով նուաճեց նաև Եգիպտոսի սուլդանը որ Ջեմին դրգռողն ու օգնականը ըլլալով, Տաճկին քանի մը երկիրներուն ալ տիրեր էր: Լեհաստանէն Մաճառներուն ու Լեհերուն հետ շատ անգամ կռուեցաւ, երբեմն երբեմն ալ յաղթուելով: Բայց իրեն պատերազմներուն մէջ ամենէն երևելին Վենետիկեցւոց հետ ըրած պատերազմը եղաւ:

Եւրոպական տէրութիւնները Տաճկին սաստիկ մեծնալը տեսնելով, կը ջանային որ անոր հետ բարեկամանան: Վենետիկեցիք ալ աս բանիս փափաքելով, դեսպան ղրկեցին. բայց ուրիշ տէրութեանց Թշնամութեանքը Սուլդան Պայէզիտ անոնց հետ առջէն աւրուեր էր: Սասափ վէր ՚ի վերոյ հաշտութիւն մը ընելով՝ դաշնագիրն ալ լատիներէն գրել տուաւ, միտքը դնելով Թէ ուրիշ լեզուով գրած դաշինքը կրնայ առանց խղճի աւրել: Ինկէց ետքը զօրաւոր նաւատորմիղով մը Ինէպախթի կղզին պաշարեց. Վենետիկեցւոց

կողմանէ ալ 150 նաւու ծովակալ ղրկուեցաւ Կրիմանի իշխանը . պատերազմը Մեթոնի առջևը սկսաւ : Վենետիկեցւոցմէ Լորետան ու Ալպան Արմենիոս զօրավարները մեռնելով, Կրիմանին ալ անձնատուր եղաւ : Սուլթան Պայեզիտ Ինեպախթի կղզին առնելով, Կորնթոսի ծովեզերքը բերդ շինել տուաւ . անկէց անցաւ, Մորայու մեծ մասին ու Մեթոնի քաղաքին ալ տիրեց : Բոսնաքէն ալ Իսկէնտէր փաշան ղրկեց, որ Իսնչուան Ֆրիուլի, Սաչիլէ և Վիչենցա քաղաքները հասաւ, բոլոր երկիրը աւերշտըկելով ու թալլելով, և Վենետիկեցիքը սաստիկ նեղը խոթեց : Բայց անոնք վերջապէս Մաճառներուն, Գաղղիացւոց ու Սպանիացւոց հետ միացան Արշիպեղագոսին քանի մը կղզիներն Տաճկաց ձեռքէն ազատեցին :

Այն ատենները 1509ին Կոստանդնուպոլիս սաստիկ շարժ ըլլալով, 109 մզկիթ, 1030 տուն, Եդիկուլէի բերդը ու արքունեաց պալատները քաղաքին փլան : Կէլիպօլուին բերդերը կործանեցան . ծովն ալ բարձրանալով, Պօլսոյ ու Գալաթիոյ պարիսպներէն ներս սկսաւ թափիլ, ու բոլոր քաղաքը ջրով ծածկուեցաւ : Սուլթան Պայեզիտ վախէն ելաւ Էտիրնէ փախաւ . և մէկէն խորհուրդ ընելով իր մեծերուն հետ՝ 8000 հոգի սահմանեց՝ որ երկու ամսուան մէջ աւերակները նորէն շինեցին : Պայեզիտ արդէն ծերացած ըլլալով, աս թշուառութիւններն ալ Ա-

տուածմէ իրեն պատիժ ստանալով, Սանասարներուն, Եհերուն ու Սենեքերիմեանց հետ ալ խառնակութիւն ըրաւ։ Բայց արտաքին պատերազմները դադրելուն պէս, սկսան ներքին խռովութիւնները իրեն որդւոցը մէջ։

Պայէզիտ էր Ահմէտ որդւոյն վրայ աւելի սէր ունենալով կ'ուզէր որ իր տեղը թագաւորէ. բայց բոլոր զօրքին աւելի սիրելի եղեր էր իր Սէլիմ որդին՝ վառվռուն ու պատերազմական ըլլալուն համար։ Ուստի ուզելով Սէլիմ որ թագաւորական քաղքին մօտ ըլլայ, վարպետութեամբ հօրմէն խնդրեց որ իրեն Եւրոպայի մասին մէջ կուսակալութիւն մը տայ։ Պայէզիտ միտքը իմանալով, ուզածը չկատարեց. անիկայ ալ հօրը կամքին դէմ ելաւ՝ Քէֆէ անցաւ. և քիչ մը ատենէն ետև թուղթ գրեց անկէց իր հօրը, խնդրելով որ Էտիրնէ գայ հօրը ձեռքը համբուրելու, որովհետև 25 տարի է որ հայրը չէր տեսած կ'ըսէր։ Երբոր Պայէզիտ ասոր բանին չհաւանեցաւ, Սէլիմ հետը գունդ մը զօրք առած՝ Էտիրնէի մօտեցաւ։ Իր փաշա վէզիրը՝ որ Ահմէտի կողմն էր՝ անոր գունդը ցրուեց, ու զինքն ալ ճնշուած Կրիմ փախուց։ Բայց որովհետև ենիչէրիները բոլոր Սէլիմին կողմն էին, սկսան Պայէզիտէն պահանջել որ Սէլիմը իր տեղը դնէ։ Պայէզիտ ալ ուզեց չուզեց անոնց հաւանեցաւ. ուստի շուտով դեսպան ղրկեցին որ դառնայ գայ։ Երբոր Կոստանդնուպոլիս հասաւ, մեծ հանդիսով ընդու-

նեցան զինքը Թոփ գափուի դռնէն. ետքը բոլոր ժողովուրդը գրգռելով, սկսան կանչել թէ Թագաւորնիս ծեր ու հիւանդոտ ըլլալուն համար՝ կ՚ուզենք որ Սելիմը թագաւորէ. Պայեզիտ ալ ստիպուեցաւ անոնց ուզածը ընելու. բոլոր քաղաքը ուրախութեան ձայնով լեցուեցաւ. մէկէն առին տարին Սելիմը, հօրը ձեռքը պագնել տուին, ու նստեցուցին թագաւորական աթոռը:

Պայեզիտ ալ քանի օրի չափ անմխիթար կերպով Պոլիս՝ կենալէն ետեւ, խնդրեց իր զաւկէն որ Տիմեթոքա երթայ. որպէս զի ուր որ ծներ էր՝ հոն տեղը մեռնի: Հաւանեցաւ Սելիմ, ու խնչուան Ետիրնէ Գափուսու ըսուած տեղը հետը գնաց. բայց դեռ հայրենիքը չհասած՝ իր հըրեայ բժիշկը զինքը թունաւորեց: Կ՚ըսեն թէ Պայեզիտ իմացաւ որ աս բանս Սելիմին ուզելովն է. ուստի ան թունաւոր գաւաթը խմելէն ետեւ, սիրտը այրած կէս մը օրհնենք կէս մը անէծք տալով իր որդւոյն, մեռաւ 1512ին, 30 տարի թագաւորելէն ետեւ: Երբոր լսեց Սելիմ իր հօրը մահը, ինքն անձամբ ելաւ գնաց, ու մեծ հանդիսով մարմինը Կոստանդնուպոլիս բերելով՝ հօրը շինած մզկիթին մէջ թաղեց, որ իր անուամբը Սուլթան Պայեզիտ կ՚ըսուի, ու եօթը օր վրան սուգ բռնեց:

Սուլթան Պայեզիտ բնութեամբ գէր ու մաղասային էր. զգեստի ու զարդարանքի կողմանէ շատ չափաւոր: Աստղաբաշխութեան ու օրէնսգի-

տուԹեան ալ շատ հմուտ էր. ուրիշ արուեստներն ու գիտուԹիւնները շատ կը սիրէր ու կը ծաղկեցնէր: Իրեն երեւելի շինուածքներուն մէջ անուանի են Սուլտան Պայէզիտ ըսուած մզկիԹը, ու քովի աղքատանոցն ու դպրոցը՝ որ հինգ տարուան մէջ շինել տուաւ. Օսմանճըգի մօտ Հալիս գետին վրայ շինած կամուրջը 19 կամարով. Սարուխան գաւառին մէջ Րետուն գետին վրայ շինածը նոյնպէս 19 կամարով. Նմանապէս Սագարիէ գետին վրայինը 14 կամարով: Իրեն ժամանակը 50,000 Թոշակաւոր զօրք կային, 12,000 ենիչէրի, և 70 նաւ ալ միշտ պատրաստ կը գտնուէր. ըսել է որ Պայէզիտ աղէկ գիտցաւ զօրքը խաղաղուԹեան համար գործածել. ու Թէ որ պատերազմ ալ հարկաւորեցաւ ընելու, խաղաղուԹիւնը ապահովցնելու համար ըրաւ:





# ՍՈՒԼԹԱՆ ՍԷԼԻՄ Ա.

ՔԱՌԱՍՈՒՆԸՀԻՆԳ տարեկան էր Սէլիմ թագաւորելու ատենը, ու 1512ին թագաւորեց։ Բարձրահասակ մարդ մըն էր, աչուըները խոշոր, կարմիր երեսով, կլոր դէմքով։ Այնչափ որ իր հայրը Պայեզիտ Բ. խաղաղասէր էր, այնչափ ինքը պատերազմասէր եղաւ. անանկ ալ բարկասիրտ էր որ իր վէզիրները անկէն աւելի չէին դիմանար, մահը ամէն օր աչուըներնուն առջին էր, կտակնին ծոցերնին կը կրէին. անանկ որ առակ եղաւ՝ մեռնիս ըսելու տեղը, Սէլիմին վէզիր ըլլաս ըսել։ Ասոր համար ալ իր մականունը Յաւուզ կոչուեցաւ։

Իր կեանքը պատերազմով անցուց, ու խորհրդականներուն մէջէն անանք կը հանէր ու կը վարձատրէր՝ որոնք որ զինքը պատերազմի կը յորդորէին. խաղաղութիւն ուզողը կը պատժուէր։

Անոր համար թշնամիքն ալ պակաս չեղան ; թէ ընտանիքներէն և թէ օտարներէն : Եղբարքն ու եղբօրորդիքը՝ որք խաբէութեամբ , որք պատերազմով , ամէնքն ալ սպաննեց : Մէջերնին եօթը տարեկան անմեղ տղան ալ , որ ոտքը ինկած կ՚աղաչէր՝ խոստանալով ինչուան իր մահը ծառայել թագաւորին , չկրցաւ անոր սիրտը շարժել :

Իր պատերազմներուն ամէնէն մեծը եղաւ Պարսից Իսմայէլ շահին հետ ըրած պատերազմը . զօրքը յոգնած ու ձանձրացած՝ ետ կ՚ուզէին դառնալ , ինքը բռնի զիրենք առաջ կը քշէր : Զօրքերը յորդորելու կերպն ալ գիտէր . ան ատենը արևը խաւարեցաւ , ու որովհետև Պարսիկները ատենով արև կը պաշտէին , Սելիմ Թշնամիներնուս աստուածը իրենցմէ երես դարձուց ըսելով զօրացը սիրտ կուտար : Հարիւր քսան հազար զօրքով հասաւ Իսմայէլին վրայ , ջարդեց՝ ջարդուեցաւ , Իսմայէլի կինն ալ գերի բռնեց : Իսմայէլն ալ կը բռնուէր , թէ որ իր Միրզա Ալի թիկնապահը անոր հագուստները հագած՝ թշնամիները չխաբէր , ես եմ Իսմայէլը ըսելով : Այսանկով Սելիմ հասաւ մինչև Ատրպատական աշխարհին մայրաքաղաքը Դավրէժ , որ մեր Խոսրով Թագաւորին գեղեցկակերտ շինածն էր : Ու թէպէտ մէկ երկու տարիէն ետքը Իսմայէլ շահը նորէն փորձ մը ընել ուզեց , բայց նորէն յաղթուեցաւ ու կորսնցուց նաև Եդեսիա , Մծբին , Ամիտէ , Նփրկերտ , և ուրիշ քաղաքներ ալ :

Այս թագաւորս եղաւ առջինը որ տաճկըներուն ծովու վրայ զօրութիւնը աւելցուց. մեծ նաւարան շինեց ու հարիւրաւոր նաւեր ծովը իջեցուց, զինեց, նաւատորմիղ կազմեց. անանկ որ եւրոպական տէրութիւնները սկսան վախնալ։

Սելիմ Երկրորդի թագաւորին հետ ալ երկար ատեն պատերազմելէն ետքը, Մէքքէ ու Մէտինէ ու բոլոր Եգիպտոս առաւ, որով ժառանգեց ամիրապետութեան պատիւն ալ՝ որ Մահմետի ցեղին պահուած էր։ Ասոր շատցուց ընծաներին ալ, որ իրմէ ետքի թագաւորները կը ղրկէին Մէքքէ. ղրկելու կերպն ալ հանդիսաւոր կերպով սկսաւ ընել, Եգիպտոսի թագաւորներուն սովորութեանը պէս՝ ուղտի վրայ բեռցընելով, որ ուղտին անունն ալ արաբերէն Մըհմէլ կ'ըսուի։

Այսչափ յաղթութիւններէն ետքը, Էտիրնէէն Պոլիս երթալու ատենը ուռեցք մը ունեցաւ կռնըկին վրայ, հարկաւորեցաւ որ դեղ մը խնջնայ. ուռեցքը մեծցաւ, բոլոր մարմնոյն վրայ տարածեցաւ, բժիշկները յուսերնին կտրեցին։ Այսանկով հոն տեղը մեռաւ Յաւուզ սուլթան Սելիմը. ութը տարի քշեց իր թագաւորութիւնը, բայց քիչ տարուան մէջ շատ պատերազմներ ըրաւ. իր բնական գործունէութիւնը թշնամիներուն դէմ բանեցուց։

Իր աղանդին խիստ նախանձայոյզ էր. պարսկական աղանդաւորները ջնջեց պատերազմով իր

տէրութենէն ։ Կ՚ուզէր Յոյներն ալ ընկճել, ու ամէն քրիստոնեաները տաճկըցընել, ու իրենց եկեղեցիները մզկիթ դարձընել, ու ով որ հաւատքը չուրանայ՝ թրէ անցընել ։ Բայց երբոր իր դէնպետին խորհուրդ հարցուց, անիկայ թէպէտ պատասխան տուաւ որ Օսմանցոց հաճոյական բան էր մտածածը, բայց սարսափելով ընելու անգթութենէն՝ Յունաց պատրիարքին ծածուկ իմացուց՝ որ քիչ մը ժամանակ ուզէ, ու իրեն խրատ տուաւ ինչ ճամբայ պէտք էր բռնել ։ Պատրիարքը բոլոր իր կղերովը գնաց Սուլթանին թագաւորին դիմացը եկաւ, ու Պօլիս առնող Ֆաթիհ սուլթան Մէհէմմէտին ֆէրմանը առջին դրաւ, որով կը խոստանար Յոյներուն՝ որ ամենեւին քրիստոնէից եկեղեցիներուն ու կրօնքին ու տօներուն չդպչի ։ Ան ալ աւելցուց որ քրիստոնէից տուած խարաճը՝ իրենց հաւատքը պահելու համար է, ինչպէս Ղուրանին մէջն ալ կայ ։ Ենիչէրիներն ալ, որ տեսեր էին Կոստանդնուպօլսոյ առումը, վկայեցին ատ պայմաններուն իրաւ ըլլալը ։ Սելիմ թէպէտ իրաւունք տուաւ իրենց, բայց Պօլսոյ մէջ եղած եկեղեցիները փոխեց մզկիթ ըրաւ, անոնց տեղը փայտաշէն եկեղեցիներ ունենան ըսաւ, չվայլեր անոնց մեր մզկիթներէն փառաւոր եկեղեցիներ ունենալ ։



# ՍՈՒԼԴԱՆ ՍՈՒԼԷՅՄԱՆ Ա.

Այս Թագաւորս, որ 1520ին իր հօրը սուլդան Սելիմին տեղը անցաւ, իրեն ժամանակի և բոլոր աշխարհիս երևելի Թագաւորներէն մէկը եղած է, իրեն ըրած անթիւ պատերազմներովն ու մեծամեծ յաղթութիւններովը: Կըրնանք ըսել թէ իրեն վարքն ու կեանքը ուրիշ բան չէր՝ բայց եթէ անընդհատ ու շարունակեալ պատերազմ մը: Բայց աս ալ կայ որ պատերազմի ատեն որչափ որ անողոքելի ու խիստ կ'երևնար իր թշնամեաց դէմ, այնչափ ալ ուրիշ ժամանակները իր ժողովրդեանը հանգստութիւնն ու խաղաղութիւնը կը փնտռէր: Նոր համար երբոր մեծամեծ յաղթութիւններէ ետքը յոգնած դադրած զօրքովը քաղաքը կը դառնար, մէկէն քաղաքական հանդէսներով քաջերուն արդիւնքը

կը պատկէր, մեռածներուն ընտանիքը կը մխիթա-
րէր, և բոլոր ժողովուրդը ուրախացնելով՝ նոր
նոր յաղթութիւններու կը պատրաստէր։ Իրեն
ժողովրդեան վրայ ունեցած սէրը ու անոնց հան-
գստութիւնը ուզելը աս բանէս ալ յայտնի է
որ պատերազմներէ քիչ մը ատեն հանգիստ
գտած միջոցը՝ օրէնքներն ու սովորութիւնները
բարեկարգելու կը գործածէր։ Աս բանիս համար
շինած է նաև տաճկաց օրինաց գիրքը, որուն
համար իրեն անունը Գանունի ըսուեցաւ, որ
Օրէնսդիր ըսել է։

Սերպարանքով ահաւոր ու պատկառելի մարդ
մըն էր, երեսը սևագոյն, ճակատը բարձր, ըն-
քուիները սև, ու ինքն ալ ծանրաբարոյ։ Ըրած
յաղթութիւններէն կ'երևնայ թէ ինքը վեր 'ի
վերոյ խորհրդով պատերազմի ձեռք չէր զարնէր,
ձեռք զարկածը կ'ուզէր առաջ տանիլ, փտանգէ
մը չվախնալով՝ փորձանքէ մը չվհատելով։ Ա-
սանկով այնչափ թշնամիներ նուաճեց, այնչափ
պատերազմներու յաղթեց, այնչափ երկիրներ
իր ձեռքին տակը առնելով՝ տէրութիւնը ընդար-
ձակեց։ Իրեն մեծագործութիւններէն կ'երևնայ
իրեն աշխարհաշինութեան հոգին, որով շէնցուց
զարդարեց իր թագաւորական քաղաքը նոր նոր
դպրոցներով, բաղնիքներով ու մզկիթներով, ո-
րոնց մէջ ամենէն անուանին է Սիւլէյմանիէ
ըսուածը, որ սրբոյն Սոփիայ եկեղեցիէն ետև՝
Կոստանդնուպօլսոյ փառաւոր շէնքն է։

Իսկ իրեն խելքն ու կատարելութեան գլուխը յայտնի կ'երեւնայ իր դրած օրէնքներէն ու ըրած բարեկարգութիւններէն, որով թէ տաճկաց և թէ հպատակ ազգերուն համար շատ արդար օրէնքներ կը դնէ, խաղաղութեան ու պատերազմի պայմանները կը սահմանէ, ու թէ երկիրը և թէ բնակիչները ամենայն բռնաւորութենէ կ'ապահովցընէ:

Սուլթան Սիւլէյմանի գիտութեանց և ուսմանց ծաղկելուն ալ շատ փոյթ ունեցաւ, մանաւանդ բանաստեղծութեան. այնպէս որ իրեն ժամանակը 150 բանաստեղծ կային, որոնց աշխոյժը իր առատաձեռնութեամբը կը վառէր: Սուլթան Սիւլէյմանի աշխարհակալ թագաւորներէն մէկը եղաւ. այնպէս որ միայն ամենէն մեծ յաղթութիւնները 13 հատ կը սեպուին. բայց մենք ասոնցմէ մէկ քանիին միայն յիշենք:

Մաճառները Օսմանցւոց հարկապահանջը նախատալից մերժմամբ մեռուցեր էին. Սիւլէյմանն շատ զօրքով ճամբայ ելաւ, և իրմէ առաջ խրկեց Ահմէտ փաշան Սապաշ բերդին վրայ. որ գնաց սոսկալի ջարդ ընելով բերդը առաւ: Սիւլէյման ինը օրուան մէջ Սաւա գետին վրայ 1800 գրկաչափ երկայնութեամբ կամուրջ մը շինել տուաւ, ու անկէց անցնելով եկաւ պաշարեց Պելկրատ քաղաքը: Ու որովհետեւ քաղաքապետը փախեր էր, քաղաքը դիւրաւ առնուեցաւ, և բնակիչներն ալ անձնատուր եղան. որոնցմէ շա-

տր որ Սուլթանք էին՝ Պօլիս քշուեցան։ Ասոնցմէ-զատ քաղաքներ ու բերդեր ալ առնելով դարձաւ եկաւ իր Թագաւորական քաղաքը։ Աս պատերազմէն զատ Սուլէյման այլ և այլ պատճառաւ շատ ուրիշ պատերազմներ ալ ըրաւ Մաճառաց հետ, ու հինգ տարիէն անոնց Պուտա ու Փէշթ քաղաքներին ալ առաւ։

Սուլթան Սուլէյման իրեն պապուն Սուլթան Մէհէմմէտին նախատինքը վերցընելու համար, որ ամէն տեղերու տիրած ըլլալով չէր կրցած Հռոդոսի ասպետները նուաճել, միտքը դրաւ որ անոնց վրայ ալ պատերազմի ելլէ։ Բայց նախ անոնց գլխաւորին որ Մագիստրոս կը կոչուէր՝ թուղթ գրեց, ըսելով որ եթէ քաղաքը խաղաղութեամբ իրեն տայ՝ ամենուն իրեն և իրեններուն կեանքը ու ընչիցը չվնասէր։ Բայց երբոր անիկայ մտիկ չըրաւ, 300 նաւով խրկեց Մուստաֆա փաշա վէզիրը, իրեն ալ 100 հազար զօրքով դէպ 'ի փոքր Ասիա ճամբայ ելաւ, ու եկաւ Հռոդոս պաշարեց։ Երեք ամիս տևեց պաշարումը. տաճիկները դրսէն պարիսպները կը փորէին, անոնք ներսէն նոր պարիսպ կը հիւսէին, և միանգամայն ներս մտնողները կը ջարդէին. անանկ որ քաղքին խրամները մեռելներով լեցուեցան։ Սուլէյման տեսնելով որ իր զօրքէն 100,000 մարդ կորուսուցեր է, պատերազմը դադրեցուց ու նորէն գրեց ըսելով թէ քաղաքը իրեն տան, և իրենք ելլեն ուր որ կ'ուզեն երթան. ապա թէ ոչ,

բռնութեանց ալ տանեմ, ամենուն քանի մը չեմ խնայեր կ'ըսէր ։ Աս ըսելով՝ նորէն սաստկացուց պատերազմը. մանգխտորոսը, ասպետները ու բոլոր քաղաքացիք սաստիկ նեղն ընկած, վերջապէս որոշեցին որ քաղաքը տան. բայց պայման դնելով որ թողու բնակչացը ազատ ելլելու երթալու ։ Սիւլէյման յանձն առաւ ու փառաւոր յաղթանակով Կոստանդնուպօլիս դարձաւ, ու իր քրոջը հարսանեաց հանդէսը կատարեց ։

Սուլթան Սիւլէյմանին ըրած երևելի պատերազմներէն մէկն ալ Վիեննայի պատերազմն է ։ Որովհետև կայսրը Մաճառաց քանի մը երկիրները յափշտակեր էր, որոնք Տաճկաց պաշտպանութեան տակն էին, Սիւլէյման սաստիկ կատաղեցաւ աս բանիս, ու անթիւ զօրքով գնաց Վիեննա քաղաքը պաշարեց ։ Տասներկեց հազար զօրք միայն կային քաղաքին մէջ, բայց տաճկըններուն վախը այնպէս գիրենք առեր էր որ յուսահատած երկայն ատեն դէմ կեցան Թշնամեաց բռնութեանը ։ Մանաւանդ երբոր կը տեսնէին թէ գիրենք պաշարողներուն ալ ձմեռուան ցրտէն ու կերակրոյ պակասութենէն կը տանջուին՝ աւելի սիրտ կ'առնուին ։ Ու թէպէտ շատ անգամ զօրացը սիրտ կուտար Սիւլէյման, և մեծամեծ պարգևներ կը խոստանար ամենէն առաջ պարսպին վրայ ելլողին, բայց մէկուն քաջութիւնն ալ բանի չէր գար ան հայրենեաց սիրովը ու Թշնամւոյն վախովը վառուած սակաւաթիւ բնակչացը դէմ. այնպէս

որ վերջը սուլթան Սիւլէյման ալ յուսահատած՝ պաշարումը վերցուց, ու Կոստանդնուպօլիս դարձաւ : Հոն շատ մեծ հանդիսով կատարեց իրեն իրեք որդւոցը թլփատութեան հանդէսը, որ քանի օր տևեց ամէն տեսակ խաղարկութիւններով, լուսաւորութիւններով ու փառաւոր հացկերոյթներով :

Սուլթան Սիւլէյման աս քաջութիւններէն զատ, շատ անգամ ալ պատերազմեցաւ Պարսից, Վենետիկեցւոց, Մաճառաց, Աւստրիացւոց հետ. ու գրեթէ ամէն անգամ իր թշնամիները սարսափեցուցած՝ իր քաղաքը կը դառնար : Բայց որովհետև տէրութիւնը շատ ընդարձակած էր, անոր համար մէկ թշնամիէն հետ պատերազմելու ատեն՝ ուրիշ կողմէն մէկալները ոտք կ՚ելլէին. ուստի հազիւ երբեք բոլորովին խաղաղութեան ժամանակ մը կ՚ըլլար. մանաւանդ երբոր իրեն որդիքն ալ սկսան թագաւորութեան աչք տնկել. որոնք մէկը մէկալին վրայ նախանձելով, իրարու թշնամութեանը պատճառ եղան : Նաև եղաւ որ սուլթան Սիւլէյման ալ իր արդարասէր մտքէն խոտորելով, իրեն Սէլիմ որդւոյն և քանի մը իշխանաց չար խորամանկութեամբը՝ իրեն երկու որդիքը Մուստաֆան ու Պայեզիտը սպաննել տուաւ : Բայց ետքը խղճալով անոնց անմեղութիւնը, ու իրեն յաջորդ ըլլալու որդւոյն Սէլիմին անկարգ վարքը, շատ ցաւեցաւ : Քանի մը տարիէն ետև երբոր նորէն Մաճառաց վրայ

գացեր էր՝ Զրինի անուանով բռնաւորի մը ձեռքէն Սիկէթվար բերդը առնելու, յաղթութիւնը չտեսած՝ 74 տարեկան մեռաւ 1566ին, քառասունըեօթը տարի թագաւորելէն ետքը։





# ՍՈՒԼԴԱՆ ՍԷԼԻՄ Բ.

ԻՐՕՔ հայրն էր Սիւլէյման Ա., որ Մաճառներուն Սիկէթվար քաղաքին առմանը ատենը՝ իր հիւանդութեանը մեռաւ, ու ետեւէն 1566ին թագաւորեց իր որդին Սէլիմ Բ.: Աս թագաւորս գինեսէր մարդ մըն էր. ու թէպէտ Մահմէտին օրէնքն էր, ու իր հայրն ալ Սիւլէյման արգիլեր էր որ գինի չխմէ, բայց ինքը ոչ միայն կը խմէր, հապա իր երկու իշխաններըը՝ որ անգամ մը իրեն միտքը ձգեցին հօրը հրամանը՝ մեռցնել տուաւ: Աս գինեսիրութեան պատճառը գինքը գրգռեց որ Կիպրոս կղզին առնէ, որովհետեւ ան կղզիին գինիովը ինքն իրմէ դուրս կ՚ելլէր:

Կիպրոս Վենետիկեցւոց ձեռքն էր ան ատենը. Սէլիմ դեսպան ղրկեց իրենց՝ ուզելով կղզին, որովհետեւ առաջուց անիկայ Եգիպտոսի փաշաներուն էր, ու անոր եկամուտը Մէքքէ կ՚երթար:

Վենետիկեցւոց իշխանները դէմ կեցան աս բանին, բայց անօգուտութեամբ · իսկ ժողովուրդը երբոր աս բանս իմացաւ, քիչ մնաց որ դեսպանները մեռցնէր պիտոր, հազիւ փախան քաղքէն ։

Տաճկըները երեք հարիւր վաթսուն նաւով ելան գացին Կոստանդնուպօլսէն, հասան Եվրիպոս ու ամենէն առաջ՝ Խալկիս քաղաքը պաշարեցին ։ Եօթը շաբաթէն առին քաղաքը, ութը օր ջարդ ու յափշտակութիւն ըրին, քսան հազար մարդ ջարդեցին, երկու հազար հոգի գերի բռնեցին, ու դարձան Պօլիս · քառասուն նաւ միայն Մուսդաֆա փաշային հետ մնաց՝ Փամակոսթա քաղաքը պաշարելու համար ։ Բայց Վենետիկեցիք ճղքելով անոնց նաւերը՝ զօրք ու կերակուր հասուցին քաղաքին ։ Տաճկըները միւս գարնանը նորէն ութսուն նաւ հասուցին Եվրիպոս ։ Վենետիկեցիք քաջութեամբ դէմ կեցան, բայց քաջութիւնը սովին չկրցաւ յաղթել · պաշարմնին հասաւ, հարկ եղաւ որ անձնատուր ըլլան ։ Պրակատին վենետկեցի քաղաքապետը դաշինք դրաւ որ իր քաղաքացիներովը ազատ ելլէ երթայ, ու երեք օրուան մէջ պարպուեցաւ քաղաքը ։

Բայց տաճկըներուն զօրավարը Մուսդաֆա ուզեր էր որ Պրակատինին մէկ ընկերը պատանդ ըլլայ իր քովը · Պրակատին յանձն չառաւ, խիստ պատասխան մը տալով · Մուսդաֆան ալ բռնեց Պրակատինը իր ընկերներովը, ընկերները սպաննել տուաւ, ու Պրակատինին ականջները ու

քիթը կտրեց, ու շատ տանջանքներ ալ տալէն ետքը՝ զանիկայ սպաննեց, փախչողներուն վրայ ալ հասաւ, խել մը մարդ ջարդեց ու գերի բռնեց։ Բայց տարի մը ետքը Վենետիկեցիք Սպանիացւոց հետ մէկ եղած ուխտերնին հանեցին տաճկըներէն Լիւնեպանթի քաղաքին առջևը՝ աղէկ ջարդ մը տալով անոնց։ Նոր համար չինեցին Պատուա քաղաքին մէջ սրբուհւոյն Յուստինեայ եկեղեցին անոր տօնին օրը այն յաղթութիւնը ընելնուն համար, Վենետիկ ալ սրբոյն Յովհաննու ու Պօղոսի եկեղեցւոյն մէջ փառաւոր մատուռ մը շինեցին նոյն սրբուհւոյն։

Այսու ամենայնիւ Սելիմ չյուսահատեցաւ, նորէն զօրք ժողվել ու նաւեր շինել տուաւ, անոնց վրայ զօրավար դրաւ Գըլըճ Ալին՝ որ շատ կտրիճ մարդ էր։ Վենետիկեցիք աս պատերազմութիւնը տեսնելով վախցան ու հաշտութիւն ուզեցին ընել, խոստանալով բոլոր Կիպրոսի պատերազմին ծախքը տալ, ու Տալմաչիայի և Ալպանիայի մէջ ալ տաճկըներուն սահմանը ընդարձակել առջինինէն ալ։

Ան միջոցին մէջ նաև Թունուզը առաւ Գըլըճ Ալի, ու անիկայ ալ Ալճէրիի ու Տրապոլիսի հետ Օսմանցւոց գաւառը եղաւ։ Տաճկըներուն սաստիկ զօրանալը տեսնելով Եւրոպայի տէրութիւնները, մէկմէկու ետևէ դեսպան կը խրկէին անոնց բարեկամութիւնն ու դաշնակցութիւնը խնդրելով։

Այսչափ յաղթութիւններէն ետքը Սելիմ մէկ քանի բնական դիպուածները չար գուշակութիւն սեպելով՝ վախնալ սկսաւ, փոխանակ վախնալու իր ախտերէն՝ որ իր կեանքը կարճեցուցին։ Ան օրերն ալ բաղնիքը երթալը բռնեց, հոն սահեցաւ ինկաւ. վերուցին տարին անկողինը, ու տասուերկու օրէն մեռաւ՝ ութը տարի թագաւորելէն ետքը։

Սուլթան Սելիմ միջահասակ մարդ մըն էր և ուժով, քիթը տափակ, ճակատը լայն, աչքը կապոյտ, մօրուքը դեղին և վիզը թանձր։ Էտիրնէի մեծ մզկիթը Սելիմիէ ըսուած՝ որուն գմբէթին մեծութիւնը Այա Սոֆիայինէն երկու գրկաչափ աւելի մեծ է, ու թագաւորին ժամանակը շինուեցաւ։ Բայց իր օրը եղած թէ շէնքերուն և թէ յաղթութիւններուն մէջ ինքը խիստ քիչ մասն ունի, արդիւնքը իր իշխաններուն էր՝ որոնց մեծ մասը քրիստոնեայ ազգերէ տաճկցած էին։





# ՍՈՒԼԴԱՆ ՄՈՒՐԱՏ Գ.

ՍՈՒԼԴԱՆ Մուրատ Սելիմ երկրորդին որդին էր ու 1575ին թագաւորութիւնը առնելով իր հօրը տեղը անցաւ. Թագաւորութենէն օր մը առաջ իր հինգ եղբայրները խեղդել տուաւ որ խռովութիւն մը չհանեն։

Ինքը միջահասակ մարդ մըն էր, հաստ ըն-քուներով, կարմիր մօրուքով, վառիտ մազերով ու տժգոյն դէմքով. Որովհետեւ Օսմանեան տէրութեան անունը ամէն տեղ տարածուած էր ու ամենուն վախ կը ձգէր, անոր համար թագաւոր եղաւ չեղաւ՝ ամէն Եւրոպական տէրութիւններէն դեսպաններ եկող եկողի էին, ինչպէս Պարսից Տահմասպ խանին ալ մարդ ղրկեց շնորհաւորելու զինքը ու տաճկաց նիզակակցութիւնը ուզելու։ Քանի որ դեռ Պարսից դեսպանը Պօլիս էր, Տահմասպ մեռաւ ու անոր որդւոցը մէջ

մեծ խռովութիւն ընկաւ թագաւորութեան համար ։ Օսմանցիք աս բանս աղէկ առիթ սեպեցին, ու Կովկասու և Հայաստանի մէջ Պարսից ունեցած երկիրներուն շատին տիրեցին ։ Աս պատերազմներուս մէջ շատ քաջութիւններով մեծամեծ յաղթութիւններ ըրին Սինան ու Օսման փաշաները, որոնք շատ գովութեամբ ու պատուով փառաւորեց թագաւորը ։

Սուլթան Մուրատ 1583ին շատ մեծ հանդիսով կատարեց իրեն Մէհէմմէտ որդւոյն թլփատութեան հանդէսը, որուն ստորագրութենէն կրնայ իմացուիլ անոր օսմանեան թագաւորութեան ճոխութիւնը ։ Ամբողջ տարի մը տևեց աս հանդիսին պատրաստութիւնը. թագաւորական ցեղին և բոլոր մեծամեծաց ու դեսպանաց համար մասնաւոր ապարանքներ շինուեցան ձիարձակարանին մէջ ։ Յունիսի առջի օրը թագաւորն ու իր տղան Իպրահիմի պալատը գնացին. տղան վերէն 'ի վար կարմիր դիպակ հագեր էր՝ հինգ մատնաչափ թանձրութեամբ ոսկիով բանած, գլուխը երկու փետուր խոթած բոլոր անդամանդներով, ականջը մեծ յակինթ մը, մատը աղուոր զմրուխտ մատնի, և մէկալ ձեռքը բոլոր գոհարներով պատած դաշոյն մը ։ Անոնց ետևէն կուգային բոլոր թագաւորին հարէմը. անոնց ալ ետևէն սպասաւորներ՝ որ տեսակ տեսակ շաքարէ շինած գազաններ ու կենդանիներ կը բերէին. ետքը բոլոր մեծամեծները առօք փառօք կու գային ։

Ամէն օր անբաւ խաղեր ու զբօսանքներ ըլլալէն ետև՝ գիշերն ալ բոլոր լուսաւորութիւն ու հրարուեստական խաղեր կ'ըլլային. Հանդիսին տաներորդ օրէն սկսեալ 150 տեսակ արուեստաւորներ, մասնաւոր զգեստներով ու արարողութիւներով Թափօր կապած, Թագաւորին դիմացէն անցան. ինչպէս ետքը ամէն դպրոցի տղաքը ալ:

Ամէնէն աւելի տևեց աս հանդէսը, և աւելի ալ կ'երկըննար՝ Թէ որ ենիչէրիներուն ու ձիաւորներուն մէջ խռովութիւններ չելլէր: Ասոր պատճառը մեծերուն չափազանց շահասիրութիւնն եղաւ, որ ժողովուրդը կեղեքելով ու զորքին ռոճիկը կտրելով՝ իրենց հարստութիւնը կը շատցընէին: Ուստի ենիչէրիները կատղած՝ ուզեցին որ վէզիրը ձգուի, ու հանճարակալը գլխատուի. աս բանիս համար Կոստանդնուպօլսոյ մէջ ալ կրակը, բռնութիւնն ու զօրաց անկարգութիւնը պակաս չէր. ժանտախտն ալ մէկ կողմանէ սաստիկ ջարդ կ'ընէր, անանկ որ միայն Էտիրնէ գափուսիէն օրը 300 մեռել կը հանէին:

Ալինան փաշան որ ան ատեն վէզիր էր, տեսնելով որ զօրքին ուզածը ընելով՝ անոնց կատաղութիւնն ու յանդգնութիւնը կ'աւելնար, Թագաւորին խորհուրդ տուաւ որ Մաճառաց վրայ խաւրէ զանոնք, որովհետև ինքն ալ Գերմանացւոց Թշնամի էր: Ասանկով ան կատղած ու գազան դարձած զօրքը ելան ցրուեցան ան երկիրները, ու ջարդ ընելով ու կողոպտելով՝ շատ երկիրներ

ձեռք ձգեցին ։ Մանաւանդ որ ան օրերը Մահմետի դրօշակն ալ որ Դամասկոս կը պահուէր՝ Կոստանդնուպօլիս բերուեցաւ, ու անկէց առին տարին Պելկրատ՝ ուր որ էր մեծ բանակը ։ Բայց սրտերնին շատ կոտրեցաւ՝ երբոր լսեցին որ Թագաւորը հիւանդ է, ու Սինան փաշան Պօլիս պիտի դառնայ ։ Ու իրաւ, սուլթան Մուրատ իր աղջիկը կարգելէն ետքը՝ սրտցաւութեան հիւանդութիւն մը ունեցաւ, և քիչ ատենէն նոյն ցաւէն մեռաւ 20 տարի թագաւորելէն ետքը 1595ին ։

Ինքը աւելի խաղաղասէր մարդ մըն էր, և գրեթէ միշտ խաղի ու զուարճութեան հետ ըլլալով՝ քաջութեան անուն մը չթողուց ․ միայն իրեն նախորդաց քաջութեամբը ստացած իշխանութիւնն ու տէրութիւնը իր շքեղութեամբն ու փառաւոր հանդէսներովը ամենուն աւելի պատկառելի ըրաւ ։ Այն իսկ իրեն զուարճութիւն սիրելը ; իր ժողովրդեան երջանկութեան պատճառ եղաւ ․ բայց աւելի հաստատուն երջանկութիւն կ՚ըլլար անոնց, թէ որ կառավարութեանը վրայ աւելի արթնութիւն ունենար, ու խելացի մարդիկ իրեն օգնական ըլլային ։





# ՍՈՒԼԹԱՆ ԱՀՄԷՏ Ա.

Ահմէտ 1606ին թագաւորեց. տասնըչորս տարուան էր թագաւորելու ատենը. այսչափ պզտիկ տարուօք թագաւոր մը չէր եղած իրմէ առաջ. անանկ որ նոյն տարին ծաղկէն բռնուեցաւ, ու քիչ մնաց որ պիտի մեռնէր։ Ահմէտ թագաւորելու ատենք իր Մուստաֆա եղբայրը չըսպաննեց իր Նախորդներուն պէս, ասկէց 'ի զատ երկու տարի չանցած երկու զաւակ ունեցեր էր, մէկալ կողմանէ ալ Պարսից, Գերմանացւոց ու Ասիայի փաշաներուն հետ պատերազմի մէջ էր, այսու ամենայնիւ զարմանք բան մըն է որ ինչպէս ենիչէրիները տրտունջ ունենալով իրենց վարձքին քիչութեանը համար, տասնուվեց տարեկան թագաւորէն սարսափած՝ լռեցին, ու իրենք իրենցմէ յանցաւորները մատնեցին որ սպաննել տայ։ Կ'երևնայ թէ դէմքին վրայ ահաւոր

րութիւն մը կար՝ որ ամենուն ակնածելի կ՚ընէր զինքը ։ Սուտի երբոր Պարսից Գուտի խանը Պօլիս դեսպան եկաւ՝ դիմացը եղած ատենը ուրիշ խօսք չկրցաւ խօսելու , բայց միայն աս՝ թէ Շահաբաս մեր Թագաւորը քու ծառադ է ․ ու Թագաւորը իր պալատին առջեւէն անցնելու ատենը , ձիուն ոտքին տակը 400 գրկաչափ տեղ ձանֆէս փռել տուաւ ։ Մէկ անգամ ալ որսի եղած ատենը Էտիրնէ , իր իշխանները պալատին դրսի դռնէն ինչուան Թագաւորին սենեկին դուռը նոր տպած ոսկի ու արծաթ դրամ ցանեցին , որ եաքը հոն գտնուողները առնող առնողի եղան ։ Իրեն վէզիրը Գույուճի Մուրատ տեսնելով որ ամէն կողմանէ վտանգ կար , Գերմանացւոց հետ ուզեց հաշտութիւն ընել , ու յիսուն տարուան հարկատուութենէն խալըսեցան Գերմանացիք , ու ան ատենէն սկսան տաճկըները իրենց հաւասար ճանչնալ Եւրոպայի Թագաւորները , որ առաջ ծառայ ու հարկատու կը կանչէին իրենց ։ Ան ատենը Ահմէտ իր ամէն զօրութիւնը Ասիայի կողմը դարձուց , ու կէս մը զօրութեամբ կէս մը հնարքով յաղթեց իր թշնամիներուն ։ Թէպէտ ինքը չէր երթար պատերազմի , բայց գիտէր մարդ ճանչնալ ու բանեցընել ․ երբեմն ալ ինքը անոնց հրաման կը դրկէր ինչ որ պէտք էր ընել ։ Ասոնց մէջ ամենէն երեւելին էր Մուրատ ․ բայց աս մարդը որչափ որ քաջ ու խելացի էր , այնչափ անգութ անողորմ էր ։ Անմեղ տղայ մը , հայրը

ապստամբներուն նուագարան զարնող ըլլալուն համար, հրամմեց որ սպաննեն. մէկու մը սիրտը չքաշեց, բոլոր ենիչէրիներն ալ խղճացին խեղճ տղուն վրայ. ան ատենը ինքը դահճակը սռաւ, տղուն գլուխը գետինը դրած՝ գառան պէս մորթեց: Ասանկ գազանաբարոյ մարդ մը ինչ չէր կրնար ընել իր իշխանակիցներուն՝ անանկ զօրութիւն ունենալով ձեռքը: բայց Ահմէտ կը ջանար անոր ձեռքէն ազատցնել իր իշխանները: Ասանկով Սուլթանը օգտակար կ'ըլլէր տէրութեան՝ վնասները խափանելով: Չքմէքճի զատէ Ահմէտ իշխանը, որ դենպետն ալ արժանի կը սեպէր վեզիրութեան, սուտղրուց ըլլալուն համար միայն՝ իրեն վեզիր չըրաւ: — Ոսմանեալի օրէնքներ աւելցուց, որ եթէ Միւէզինզատէ Ալին ժողվեց ու մէկ գիրք մը ըրաւ, որ բաւական է աս Թագաւորիս յիշատակը անմահ ընելու:

Շէնքերու ալ սէր ունէր. Ահմէտին ըրած մզկիթը ինքը շինել տուաւ Աթ մէյտանին գլուխը. Գոփրանլէին աղբիւրն ալ իրեն շինել տուածն է, բայց 'ի սուրբ շէնքերէն ալ որ շինեց Պոլիս, Մէքքէ ու Մէտինէ: Իր ատենը սկսաւ Քեապէի ծածկոյթն ալ Կոստանդնուպօլսէն երթալ, որ առաջ Եգիպտոս կը շինուէր. ու հին ծածկոյթը մասունքի մը պէս Ահմէտին ընծայ բերին, խոշոր մարգըրտին հետ՝ որ Քեապէին պատին վրայ տեղաւորած էր, ու կը կոչուէր

Ռէվքէպ տիւրրէր, այսինքն մարգրիտներուն աստղը. վասն զի Ահմէտ ալ անոր տեղը մեծ գոհար մը խրկեր էր, չորս դին 227 ուրիշ գոհարներով զարդարած։

Աս Թագաւորիս ատենը եղաւ զօրավար ու եօթը վէզիր, Խալիլ փաշան՝ որ հայ ու կեսարացի էր, քաջ մարդ, որ Ելիսոս կղզիին վրայ գնաց նաւերով՝ ու մեծ յաղթութիւն մը ըրաւ, ու Պարաձէհէննեմ ըսուած նաւը բռնեց, որուն մէջը 90 թնդանօթ կար, 500 գերուոր, տեսակ տեսակ հրացան զէնքերը 2150 հատ։ Աս Խալիլն է որ եօթը Կազախներուն ալ յաղթեց, ու Լեհերուն ու Պարսկաստանցւոց հետ ալ նորէն դաշինք հաստատեց։ Իսկ Ահմէտ տասնըչորս տարի Թագաւորելէն ետքը՝ կարճ հիւանդութեամբ մը մեռաւ։





# ՍՕՒԼԹԱՆ ՄՕՒՐԱՏ Դ.

ՍՈՒԼԴԱՆ Մուստաֆա աստիճանէն ետքը անցաւ 1623ին։ Աս թագաւորս միջահասակ մարդ մըն էր կլոր դէմքով, սեւ մօրուքով, մեծ աչքով, ու սաստիկ ուժով. բնութեամբ խիստ ու անողոք, ու տեսնողը կը վախցընէր։ Այնչափ ուժով էր որ նետած նետերը հրացանի գնդակներէն աւելի հեռու կ'իյնային, ու չորս մատնաչափ թանձրութեամբ երկաթ տախտակը կը ծակէին։ Անգամ մըն ալ պատերազմի ատեն Ռէվրէս քաղաքն որ հասան, տեսաւ որ զինուորները իրենց երկաթէ գործիքներովն ալ չեն կրնար քաղաքին դուռը կոտրել, հրամմեց որ ծառի կոճ մը բերեն. առաւ մինակ ան կոճը՝ որ շատ հոգի մէկէն հազիւ կրցեր էին բերել, ու մէկ զարնելուն՝ երկաթէն աւելի ամուր դուռը խորտակեց։

Ասանկ ուժով ըլլալուն՝ որսի ու պատերազմի

ալ չափէ դուրս սէր մը ունէր ։ Որսի եղած ժամանակը 30,000 հոգի ալ հետը կ'առնէր ։ Իրեն քաջութեանը հետ անգութ սիրտ մըն ալ ունէր․ կ'ըսեն թէ իր 17 տարի թագաւորելու միջոցը 100,000 մարդ սպաններ է․ ինչպէս իր եղբայրներն ալ իր թագաւորութեան ապահովութեանը համար սպաննել տուաւ ։ Անգամ մը մարդ մը եկաւ իրեն աւետիս տալու համար թէ որդի մը ունեցեր է․ Թագաւորը հրամմեց որ ան մարդը բռնեն ու բանտ դնեն․ ու երբոր ստուգեց թէ աղջիկ է եղեր ծնածը, մարդը չարաչար սպաննել տուաւ ։

Շատ անգամ ալ նոյն իսկ իրեն պատուած պաշտօնատէրներն ու մեծամեծները կախել կու տար ։ Ով որ խահուէ, գինի, ծխախոտ ու ափիոն գործածէր, պատիժը մահ էր․ անոր համար բոլոր խահուէի խանութները կործանեց․ աս խստութեան պատճառը աւելի ան եղաւ, որ կը կարծուէր թէ իր ատենը եղած Պիւպալիին մեծ կրակը՝ որ Կոստանդնուպօլսոյ մեծ մասը մոխիր դարձուց՝ ծխախոտ քաշողներու անհոգութենէն եղեր էր ։ Իմանալով որ իր Էմիր չէլէպի անունով բժիշկն ալ ափիոն կը գործածէ, օր մը հարցուց իրեն թէ ծոցդ ինչ կայ ։ Ան ալ տուփը հանեց՝ ըսաւ, Ափիոն է ։ Թագաւորը բռնութեամբ տուփին մէջ որչափ որ կար՝ բոլորն ալ կլլեցուց խեղճ մարդուն, ուսկից թունաւորուելով՝ քիչ ատենէն մեռաւ ։ Անգամ մը վենետիկեցի վաճառական մը իր տանը պատուհա-

նէն դիտակով Թագաւորին պալատը նայելուն համար պատուհանէն կախել տուաւ զանիկայ ։ Պաղդիայւոց դեսպանին Թարգմանն ալ ցիցը հանեց, որովհետեւ գաղդիացի վաճառականի մը կողմը կը բռնէր դատաստանի մէջ ։ Ուրիշ Թարգմանն մըն ալ իր սանիկը գլխարկովը կախել տուաւ, որովհետեւ իր տէրը տաճկի մը հետ Թշնամութիւն ունեցեր էր ։

Սուլթան Մուրատին առենը քանի մը անգամ Ենիչէրիներն ալ մեծ ապստամբութիւններ հանեցին, ու Թագաւորը զանոնք ուրիշ կերպով չկրցաւ խաղաղցընել՝ բայց եթէ ուզած մարդիկնին անոնց ձեռքը տալով որ սպաննեն ։ Շատ պատերազմներ ըրաւ Պարսից շահին ու Ասիոյ Տաճկաստանին մէջ եղած ապստամբ իշխաններուն հետ ․ ու ամէն անգամ ինքը կ՚ըլլար զօրքին առաջնորդը ու սիրտ տուողը ։ Բայց իր յաղթութիւններուն մէջ ամենէն երեւելին Պաղտատը Պարսից ձեռքէն առնելն է ։

Սուլթան Մուրատ արդէն 1635ին շատ զօրքով գնացեր էր Պարսից վրայ՝ անոնց ձեռքէն Պաղտատ քաղաքը առնելու, բայց չէր յաջողած ․ անոր համար միայն Երեւան ու Թավրէժ քաղաքները առնելը բաւական սեպեց ու ետ դարձաւ ։ Բայց քանի մը տարիէն ետեւ Պարսիկները Թավրէժը նորէն ետ առին, ու Օսմանցւոց հպատակներուն ալ շատ նեղութիւն կուտային ։ Աս բանիս համար Սուլթան Մուրատ նորէն անհա-

ձայն զօրք ժողվեց, եկաւ նորէն Պաղտատը պաշարեց, ու սկսաւ մեծամեծ թնդանօթներով անոր պարիսպները քանդել. շատ ջարդ ըլլալէն ետքը թէ իրեն և թէ թշնամեաց կողմէն, վերջապէս 1638ին վերջերը քաղաքը առնուեցաւ, ու Թագաւորը հրամմեց որ որչափ Պարսից աղանդէն մարդ կար՝ բոլորն ալ թրէ անցընեն։ Աստի կ'ըսեն թէ 30,000 ընակիչներէն հազիւ թէ 300 հոգի փախան ու ազատեցան։ Նմանապէս որչափ պարսիկ որ եկեր ու Օսմանցւոց բանակը տարուեներ էին՝ բոլորն ալ ջարդուեցան։ Սուլթան Մուրատ հրամմեց որ մնացեալ հազար հոգի զինւորը շարեն, ու ամէն մէկուն ետեւն ալ մէյմէկ դահիճ կեցուց, և աչքով նշան մը ընելուն՝ հազարաւոր գլուխ մէկէն գետինն թօթափեցան.

Այսչափ կոտորածէն ետև ինքը Կոստանդնուպօլիս դարձաւ ու հոն ոսկի աթոռի վրայ նստած ընդունեցաւ եւրոպական տէրութեանց դեսպանները։ Պարսից հետ ալ դաշինք դրաւ Երևանը անոնց տալով ու Պաղտատը իրեն պահելով։ Ան օրերը ափրիկեցի մարդուն մէկը ձայն հանեց թէ ինքը ոսկի շինելուն կերպը գիտէր։ Թագաւորը իր առջևը փորձն ընել տալով, երբոր չյաջողեցաւ՝ աչք ըրաւ քովիններուն, ու մէկէն իր դիմացը խողդեցին խեղճը, և վզէն քար կապելով՝ ծովը ձգեցին։

Վերջի ատեններն իր ոտնասաութեան ցաւը բռնեց, անոր վրայ մէջքի ցաւ մըն ալ ունեցաւ. և իրեն

օղէ և գինիէ չզգուշանալուն համար՝ ծանրացաւ հիւանդութիւնը . ուստի բոլոր բժիշկներուն մէկ սպառնացաւ՝ թէ որ զինքը չբժշկեն . բայց վեր-ջապէս 1640ին երեսուն տարեկան մեռաւ : Վեր-ջի հիւանդութեան ատենը ուզեց իր մնացած Իպրահիմ եղբայրն ալ սպաննել, որպէս զի իր զինակիրը թագաւորեցընէ . բայց մայրը զտղան խալըսեց , ու Մուրատը խաբեց՝ իբրև թէ անոր կամքը կատարուած ըլլար :

Ո՛րչափ մարդ էր Մուրատ, և իր քաջութեանը իր տէրութիւնը արտաքին ու ներքին թշնամի-ներէ ազատեց . բայց անգթութեանը իրեն քա-ջութեան փառքը մթնցուց :





# ՍՈՒԼԴԱՆ ՄՈՒՍԴԱՖԱ Բ.

ՍՈՒԼԴԱՆ Մուստաֆա Բ. Թագաւորեց 1695ին. Թագաւորելու օրերը յաղթուեցան Վենետիկեցիները տաճիկներէն Սախըզ կղզիին առջեւը, ու կղզին տաճիկներուն եղաւ։ Այս յաղթութիւնը սիրտ տուաւ Մուստաֆային որ Գերմանացւոց դէմ երթայ. 45 հազար զօրքով Էտիրնէէն ելաւ, քանի մը քաղաք ալ առնելէն ետեւ՝ Վետերանիոս առջին մեծ ջարդ մը տալով անոնց, ու յաղթանակով Պօլիս դարձաւ։ Հետեւեալ տարին նորէն վրանին վազեց, ու Դեմիշվարի մօտ ջարդ մըն ալ տալէն ետքը՝ առնըցուց Դեմիշվար ու Պէչկերաստ քաղաքները, ու դարձաւ Էտիրնէ։ Նոյն միւս տարին նորէն որ ելաւ պատերազմի Թիսա գետին մօտ յաղթուեցաւ, վէզիրը ու մեծերին ինկան, ամէն ունեցածը չունեցածը Գեր-

մնացոց ձեռքն ընկաւ, ինչուան Թագաւորական կնիքն ալ, որ Վիեննա արքունի գանձին մէջ պահեցին ։

Թագաւորը Պըշվար հասածին պէս՝ նոր վէզիր ու իշխաններ դրաւ, ու իր յաւսահատութիւնը դրուանց չփոխցընելու համար նորէն պատրաստութիւն կը տեսնէր, բայց ան ձմեռը հաշտութիւն ըրաւ ։ Սատրատինու մօտ Կարլովիչ գեղը ժողվեցան 1699ին քրիստոնեայ տէրութեանց դեսպանները զօրքով, Օսմանցիք ալ անոնց դիմացը. ժողովարան մըն ալ շինեցին հոն, ու եօթանասուն օր խորհուրդ ընելէն ետքը՝ հաստատուեցաւ դաշինքը ։ Մաճառներուն երկիրը ու Թրանսիլվանիա բոլոր մնաց Գերմանացւոց, Մօռա ու Տալմաչիա Վենետիկեցւոց, Կամենից, Փոտոլիա ու Ուքրանիա Լեհերուն ։ Ռուսները միայն զոհ չեղան, ինչու որ Ազախին բերդը ու Կերչը ուզեր էին, Մուստաֆային գործակալը Ռէիս էֆէնտին յանձն չառաւ տալ. անոր համար անոնց հետ զինադադարում միայն ըրաւ, իսկ մէկալ տէրութեանց հետ քսանըհինգ տարուան հաշտութիւն ։

Աս անուանի հաշտութեամբս սկսաւ տաճկըներուն մէջ աւելի քաղաքականութիւն մտնել. եւրոպական տէրութեանց հետ հաղորդակցութեամբ ։ Թագաւորը Էտիրնէէն ելաւ Պոլիս գնաց՝ դաշնակից տէրութեանց դեսպաններին ընդունելու. ու թէ ինքը և թէ ուրիշ տէրու-

Թեանց դեսպանները անանկ հանդիսով ու բազ-մութեամբ մտան Պոլիս, որ քիչ եղած է անոր նմանն հանդէս ։ Այն ատենը Գերմանացւոց դես-պանը Երուսաղէմ եղած ֆրանչիսկեան կրօնա-ւորներուն համար ազատութիւններ խնդրեց ու առաւ. արեւելցի ազգերէն ալ դեսպաններ եկան ուրախակցութեան համար, ու ամենուն հետ խա-ղաղութիւն հաստատուեցաւ ։

Խաղաղութեան հետեւանքը եղաւ աշխարհքին բարեկարգութիւնը, մաքսերուն ու քրիստոնէից տուրքերուն թեթեւութիւնը, ու Պոլիս ու Է-տիրնէ քաղքըներուն շէնքերով զարդարուիլը ։ Այն ատենը Ջիւանէին փաշա աշխարհաշէն վէ-զիրը մեռաւ, ու անոր տեղը անցաւ Տալթապան Մուստաֆա անունով Սըրֆ մը, որ արգիլեց քրիստոնէից ու հրեաներուն դեղին ոտից ամանն ու կարմիր գլխարկ հագնիլը, կնիկներուն ալ լայն ֆէրաճէ հագցընել տուաւ, լաչակնին ալ հաս-տըցուց ։ Տալթապան ծխակալ մարդ մըն էր, սկսաւ մէկուն մէկալին կենացը դարանիլ. իմացաւ Թա-գաւորը, զինքը վէզիրութենէ ձգեց, ու մէկ քանի օրէն գլխատել տուաւ. անոր տեղը դրաւ Րամի Մէհէմմէտ, որ շատ խաղաղասէր ու աշխարհա-շէն մարդ մըն էր. աղբիւրները Էտիրնէի մէջ շատցուց, Սելանիկի բրդեղէններն ու Պուրսայի մետաքսեղէնները բարակցուց, Րաքիպայէն ալ խահուէի հունտ բերաւ, ու ջանաց որ Պոլիս ան-կէ շատցընէ, բայց կլիման ձեռք չտուաւ ։

Այս միջոցիս մեծ խռովութիւն հանեցին ենի-չերիները, շատ տժգոհութեանց հետ՝ Թագաւո-րին ու վեզիրին վրայ ալ գոհ չէին։ Խռովարար-ները բազմութեամբ Մահմէտին դրօշը առջե-նուն 7000 զօրքով 900 էմիր հետերնին, Թնդա-նօթներով, ուրիշ հրազէններով, վառօդի տա-կառներով, ու 70 հազար պատերազմական գոր-ծիքներով վազեցին Ատրինէ պաշարելու, ուր էին Թագաւորն ու վեզիրը։ Վեզիրը իմանալուն պէս՝ ութսուն հազար զօրք Ատրինէին դաշտը հանեց, անանկ որ եթէ պատերազմելու ըլլար՝ խռովա-րարները չէին կրնար դէմ կենալ. բայց ինքը հրամմեց որ ապստամբները երեւցածնուն պէս՝ զօրքերը քաղաքը քաշուին։

Ապստամբները Սիլիվրի հասան, խորհուրդ ը-րին, Թագաւորին եղբայրը սուլդան Ահմէտ Գ. Թագաւոր ընտրեցին։ Անոնք ծածուկ իրենց հետ միաբանեցին Թագաւորին զօրքը. անանկ որ վե-զիրը երբոր պատերազմ հրամմեց, չհնազանդե-ցան։ Այս որ տեսաւ վեզիրը, փախաւ գնաց երե-սը ծածկեց. Թագաւորն ալ մէկէն Ատրինէ դար-ձաւ, գտաւ իր եղբայրն ու ըսաւ. Եղբայր իմ, ժողովուրդը քեզ կ'ուզէ Թագաւոր. ու անոր թո-ղուց Թագաւորութիւնը։ Իրաւ ուրիշ կերպ չէր կրնար ընել, բայց ան առենի ուրիշ Թագաւոր-ներուն բռնած կերպին նայելով՝ որ յուսահատու-թեան մէջ ինչ բաներ ըրին, կ'իմացուի մէկէն Մուստաֆային խաղաղասէր բնութիւնը։ Այս-

պէս իր թագաւորութենէն ընկած, ու արգելա-
րանին մէջ՝ 1703ին վերջի օրը մեռաւ։

Ինքը գեղեցիկ տեսքով մարդ մըն էր, և հպա-
տակներուն աղէկ կը նայէր, բայց շատերուն ալ
ինչքը գրաւեց, կեանքերնուն ալ չխնայելով։





# ՍՈՒԼԹԱՆ ՄԱՀՄՈՒՏ Ա.

ՄԱՀՄՈՒՏ Ա. 35 տարուան կտրիճ մըն էր երբոր թագաւորեց 1730ին, ու առջի գործքը եղաւ զինուորներուն առատ բաշխոյքը՝ որ 7500 քսակի կը հասնէր, որով քիչ մը ատեն անոնց խռովութիւնը զսպեց : Բայց ետքը տեսնելով թէ քանի որ անոնց գլխաւորները կենդանի են՝ ապըստամբութիւնը պիտի չդադրի, հրամմեց որ անոնց առաջնորդները սպաննուին, որ էին Փատրոնա Խալիլ ու Մուսլու : Այն ատենները Նատըր Շահ շատ բռնութիւններով ու անգթութիւններով Ասիայի մէջ Օսմանցւոց երկիրներուն կը տիրէր, և մէկ կողմանէ ալ Պօլիս դեսպան կը ղրկէր, ըսելով թէ հաշտութիւնը կ'ընէ՝ թէ որ տաճկըները իրենց Ճաֆէրի աղանդն ալ ճշմարիտ ճանչնան, ու թողուն որ Պարսիկներն ալ

Մէքքէ ու Մէտինէ ուխտի երթան։ Նատըր երբոր տեսաւ որ Օսմանցիք իրեն դրած պայմանները չեն ուզեր հաստատել, գնաց Պաղտատ քաղաքը պաշարեց. և կարծելով թէ քաղաքացիք տարակուսեր են ու չեն գիտեր ընելիքնին, գիրենք ծաղրելու համար սայլ մը ձմերուկ խաւրեց Փուլատ Ահմէտ փաշայէն, որ ան ատեն քաղաքին կուսակալն էր։ Ահմէտ փաշան անոր միտքը իմացաւ, ու ինքն ալ նոյն սայլը ձերմակ ալիւրէ շինած հացով լեցուց ու Նատըրին խաւրեց, իմացընելով թէ ոչ միայն սովէ վախ չունին, հապա նաև այնպիսի պատուական հաց էր կերածնին։

Օսմանցիք Պաղտատու պաշարումը լսելով՝ իրենց համբաւաւոր Թոփալ Օսման փաշան խաւրեցին, որ եկաւ Պարսիկներուն մեծ ջարդ տալով՝ մօտաւ Պաղտատ քաղաքը, ազատեց պաշարմունքէն։ Սուլթան Մահմուտ աս յաղթութիւնը լսածին պէս, հրամեց որ իրեք օր լուսաւորութիւն ընեն քաղաքը. ետքը Ահմէտ ու Օսման փաշաններուն ալ շատ պատիւներ ու ընծաններ ղըրկեց, և անկէց ետև իրեն անունն ալ Ղազի ըսուեցաւ։ Բայց իրեք տարիէն Պարսիկները նորէն յարձակեցան ու Օսմանցւոց բանակը ջարդեցին, ուր տեղ Թոփալ Օսմանն ալ ընկաւ մեռաւ։ Աս որովհետև ան ատենները Օսմանցիք Ռուսաց դէմ ալ պատերազմի կը պատրաստուէին, անոր համար Նատըր շահին ու Պարսից հետ

հաշտութիւն ըրին, անոնց ուզածներէն շատին հաւանելով։

Իսկ Ռուսաց պատերազմին պատճառը աս եղաւ որ Խրիմու խանը՝ Նատըր շահին դէմ զօրք հանել ուզելով, հարկ էր որ Կովկասու երկրէն անցնէին. Ռուսներն ալ աս բանս չուզելով, քանի մը անգամ Օսմանցւոց բողոքեցին. և տեսնելով որ անոնք միտք չեն ըներ՝ պատերազմի պատրաստուեցան. ուստի յարձակեցան Խրիմի վրայ, ու Ազախ բերդը պաշարեցին։ Վէզիրը Նասէյտ Մէհէմմէտ մէկէն զօրքը ժողվեց, ու սովորական քաղաքական հանդէսներով ճամբայ ընկաւ. և որովհետև Ռուսները արդէն շատ տեղերու տիրեր էին, կ՚ուզէր որ պատերազմը հաշտութեամբ ու խաղաղութեամբ լմննայ։ Բայց երբոր Օսմանցիք տեսան քրիստոնէից դրած ծանր պայմանները, նորէն պատերազմի պատրաստուեցան, ու Ռուսներուն, Լեհերուն ու Գերմանացւոց երկայն ատեն շատ նեղութիւն տալէն ետև, և երկու կողմէն ալ շատ մարդ կորսուելէն ետև՝ վերջապէս ծանր պայմաններ յանձն առնելով, Պելկրատու ժողովքին մէջ 27 տարուան համար հաշտութիւն սահմանեցին։ Երբոր վէզիրը Պօլիս դարձաւ, շատ մեծ հանդիսով զինքը ընդունեցան, թագաւորն ալ մանաւոր կերպով զինքը փառաւորեց։

Ռուսաց ու Գերմանացւոց պատերազմէն ետև Սուլթան Մահմուտ ուզելով ժողովուրդը զբաղեցընել, 1340ին իրեն իրեք աղջկանց հարսնիքը

կատարեց շատ տեսակ քաղաքական հանդէսներով։ Բայց ժողովուրդը ուտելիքի սղութեան համար մեծ խռովութիւն հանեցին. այնպէս որ հազիւ վէզիրը ու ենիչէրիներուն զօրավարը մէկ եղած՝ կրցան զանոնք հանդարտեցընել։ Նոյն օրերը Գերմանացւոց դեսպանն ալ Պօլիս հասաւ շատ ընծաներով. բայց չէ թէ միայն ուզած պայմանները չկրցաւ առաջ տանիլ, հապա նաև պատիւ չգտնալէն զատ՝ շատ անարգուեցաւ։ Նոյն ատենները հասաւ նաև Նադրը շահին դեսպանը, որ շատ փառօք ընդունեցան, այնպէս որ արքունիքը մտած ատեն դրան երկու կողմէն շարուած էին թագաւորին երեսուն ձիանքը՝ բոլոր ոսկիով մարգրտով ու գոհարներով զարդարած. նմանապէս թագաւորին թիկնապահներն ալ բոլոր ոսկեղինակ զգեստներով, ու արծաթ ոսկի սաղաւարտներով։ Դեսպանը այնչափ ճոխութիւնը տեսնելուն պէս շփոթած՝ ուրիշ բան չկրցաւ ըսել, բայց եթէ՝ Տէր արքայ, ու մէկէն Նադրին թուղթը հանեց ու թագաւորին տուաւ։ Այսու ամենայնիւ խոհեմ՝ թագաւորը իմացաւ թէ Նադրին միտքը չար էր, բայց ջանաց որ ժողովուրդն ալ աս բանիս վրայ կասկած չունենայ. ուստի մեծ հանդիսով Մէտինէ ու Երուսաղէմ ընծաներ ղրկեց։

Բայց ետև ետև դեսպաններ կուգային ըսելով թէ Նադրը շատ զօրքով պատրաստուեր է Պաղտատ ու Տիգրանակերտ քաղաքները առնե-

լու, և թէ Կարին քաղաքն ալ արդէն պաշարած է։ Հոն տեղը եղած կուսակալները երկայն ատեն ան բռնաւորին դէմ կեցան, շատ անգամ ջարդուելով, շատ անգամ ալ յաղթելով. բայց երբոր Պօլսէն ալ անհամար զօրքով ճամբայ ընկաւ Հէքիմզադէ Ալի փաշան՝ ՙՆատըրի վրայ երթալու համար, Պարսիկները դարձեալ դեսպան ղրկեցին առջի ուզած պայմանները նորէն առաջարկելով։ Վերջապէս կէս մը Օսմանցիք կէս մըն ալ Պարսիկները իրենց ուզածէն ետ կենալով՝ հաշտութիւն եղաւ մէջերնին։ Այս ձայնը զամէնքը ուրախացուց, և սկսան Պարսկաստան խաւրելու ընծաներու պատրաստութիւնը տեսնել։ Նաև որովհետև լսեցին թէ ՙՆատըր ոսկիէ գահ մը կը ղրկէ թագաւորին բոլոր մարգրիտներով ու գոհարներով զարդարած, Օսմանցիք ալ անոնցմէ վար չմնանք ըսելով՝ անհամար ծախք ըրին ղրկելու ընծաներուն, որոնց մէջ կային գոհարազարդ դանակներ, սուրեր, աղեղներ, կապարճներ, ոսկի տուփեր, ժամացոյցներ, դիպակներ ու զէնքեր. ասոնցմէ զատ երեսուն ալ ձի՝ փառաւոր կազմուածքով, որոնց ամենուն գինը 400,000 ղուրուշի կը հանէր։ Այս ընծաները տանողն ալ որոշուեցաւ ՙՔէսրիէլի Ահմէտ փաշա, իրեն հետ Ռահմի ու ՙՆիւման Էֆէնտիները։ Բայց ասոնք հազիւ թէ Պարսից սահմանը անցեր էին, լսելով ՙՆատըր շահին սպաննուիլը՝ փախան Պաղտատ գնացին։ Պօլիս շատ մեծ

ուրախութիւն եղաւ այնպիսի բռնաւորի մը սպան-
նուիլը. մանաւանդ որ ան ատենները բռնուելով
սպաննուեցան նաեւ Եգիպտոսի բռնակալ նախա-
րարները, որ Մէմլուք կ'ըսուէին։

Սուլթան Մահմուտ իր թշնամիներէն ազատե-
լով, հրամեց որ իրեն աղջկանց հարսնիքը ամենայն
փառաւորութեամբ կատարուի։ Բայց որովհե-
տեւ ան օրերը լուսնի ու արեւու խաւարումն պատա-
հեցաւ, և ժողովուրդը տեսնելով որ Սէյիտ Ապ-
տուլլահ փաշան վեզիրութենէ ընկաւ, սկսան ը-
սել թէ լուսնի խաւարումը վեզիրին իյնալուն նը-
շանն էր, ու անտարակոյս թագաւորին գլխուն ալ
գալիք մը կայ։ Մանաւանդ որ ան օրերը ասդին
անդին ալ կրակները շատցեր էին, ուսկից չար գու-
շակութիւններ կ'ընէին ժողովուրդը։ Սուլթան
Մահմուտ ալ աս խօսքերս վերջացընելու համար,
սկսաւ այրած տեղերը նորէն շինել տալ ու նոր
շէնքեր հաստատել. Եւրոպացւոց դեսպաններէն
եկած շատ ընծաներն ալ աս բաներուս կը ծա-
խէր։ Բայց աս խռովութեանց գլխաւոր պատ-
ճառը Պեշիր անունով Ներքինապետն էր, որ թա-
գաւորին սիրելին ըլլալով՝ ուզածը առաջ կը տանէր
ու մեծամեծ պաշտօնատէրներն ալ ուզածին պէս
փոփոխել կուտար. այնչափ որ բոլոր պալատա-
կաններն ու գիտուններն ալ անոր հետ թշնա-
մացան, և դենպետն ալ թագաւորին իմացուց
թէ ինչուան որ Պեշիրը չմեռցընէ, ժողովուրդը
չհանդարտիր։ Օր մը թագաւորը Պեշիրին հետ

մէկտեղ ուզեց Մ՝ափորի վրայ եղած պատղամնե-րէն մէկը երթայ. Ինքը դուրս ելլելով նաւակէն՝ աչքը ըրաւ պոռթանձնիպաշխին որ Պէշիրը Պըրզ գուլէսին տանը ձգէ, ուզելով որ անկէց ալ Եգիպ-տոս աքսորէ զանիկայ։ Բայց երբոր իմացաւ որ ասով ալ գոհ չեն մեծերը, սպաննել տուաւ զին-քը, որուն քովէն բաց անհամար հարստութենէ, 50,000,000 ալ դուրուշ գտնուեցաւ։ Պէշիրին սիրելիներէն մէկն էր նաև մեր ազգէն Եղազար անուանով մէկը, որ նոյն ատենը սպաննուեցաւ։

Նոյն տարին, որ էր 1752, մեծամեծ երկրա-շարժներ ու փոթորիկներ եղան. այնպէս որ Է-տիրնէի մզկիթներէն շատը փլան, ու Պօլսոյ Այա Սոֆիա ու սուլթան Մէհէմմէտ մզկիթ-ներն ալ շատ վնասուեցան. նմանապէս քաղա-քին հին պարսպաց մէկ մասը ու Եալի գուլէին մէկ աշտարակը կործանեցաւ. Պեաղատխանէի գետը սաստիկ բարձրացաւ, ու տուներ ու ջրա-ղացներ քշեց տարաւ, և շատ մարդիկ փլատակնե-րու տակ մնացին։ Այս չար գուշակութիններուն ու ամեկին աւելորդապաշտութիւնը կարծես թէ արդարացուց սուլթան Մահմուտին հիւանդու-թիւնը, որ դեկտեմբերի 13ին ուրբաթ օրը հա-զիւ թէ մզկիթ կրցաւ երթալ, ու դառնալու ա-տեն արքունիքը հասաւ չհասաւ՝ ինկաւ մեռաւ 1753ին։ Մէկէն 'ի մէկ արքունեաց թնդանօթ-ներն արձըկուեցան, որ նշան էր թագաւորին մահուանը։

Մահմուտ յիսուն տարուան էր երբոր մեռաւ, ու 24 տարի թագաւորեց խաղաղութեամբ ու արդարութեամբ։ Իր օրերը գիտութիւններն ու վաճառականութիւնը ծաղկեցան. քաջութեան անունն ալ բոլոր Եւրոպա հռչակուելով՝ ամէն տէրութիւններ իրեն դեսպան կը ղրկէին, Օսմանցւոց նիզակակցութիւնն ու օգնականութիւնը ուզելով։ Իսկ իրեն մեծագործութիւններուն մէջ անուանի են Պիւյիւքտէրէի մէջ շինել տուած մեծամեծ ջրշիղջները, որոնցմէ ջուրը գետնի տակէն ու մեծամեծ կամարներու վրայէն անցընելով՝ Պէյօղլու ու Գալաթիա բերել տուաւ։ Ան ատեն շինուեցաւ նաև Պէյօղլուի Թաքսիմ ըսուած ջրաբաշխը, որուն ջուրը կը բաժնուի 40 աղբիւր, ու ամէն տեղ կը տարածուի։

Սուլդան Մահմուտի մեծանունութիւնն ու վըսեմութիւնն ալ աղէկ կ'երևնայ աս հետագայ դիպուածին մէջ։ Անգամ մը երբոր պոսթանճիպաշին հետ ծպտեալ կը պտըտէր Վոսփորի մէջ, տեսաւ որ անդիէն նաւակ մը կ'անցնէր չորս թիով, և մէջն ալ հրեայ մը ազնիւ կերպասներու ու ոսկեթել դիպակ բարձերու վրայ կռթընած, ոսկւով ու սաթով պատած ծխափայտէ մը ծուխ կը քաշէր։ Աս հրեան եէնիչէրիներուն պաշարը ինքը կը պատրաստէր ու պոսթանճիպաշին անոր սատտիկ թշնամի ըլլալով, աս տեսածին պէս՝ սկըսաւ վրան չարախօսութիւններ ընել։ Իսկ թագաւորը ոչ միայն ականջ չկախեց անոր ըսածնե-

րուն, հապա խնտալով մը ըսաւ. Հա՜յ անխելք, ինծի փառք չէ՞ սակայն որ մինչեւ հրեաներն ալ որ ամէն տեղ անարգուած են՝ իմ տէրութեանս մէջ ասանկ ազատութիւն ու ճոխութիւն կը վայելեն։





# ՍՈՒԼԴԱՆ ՄՈՒՍԴԱՓԱ Գ.

ՍՈՒԼԴԱՆ Մուստաֆա Գ. երբոր Թագաւորեց 1758ին, իր առջի հրամանը աս եղաւ ըսել էֆէնտիին՝ որ Եւրոպացւոց դեսպանները երբոր գան՝ զուրցէ իրենց թէ ամէն ընծայէն աւելի հաճոյական է իրեն՝ որ տաճիկ գերիները արձըկեն: Պարտքի համար բանտուողներուն համար ալ ստակ սահմանեց ազատելու: Շատ անգամ ծպտեալ կը պտըտէր քաղաքը՝ ինքիրեն դիտելու տեսնելու ամէն բան. շատ խիստ էր քրիստոնէներուն ու հրէից հագուստին, չէր ուզեր որ կնիկ մարդիկ ամենևին տնէն դուրս ելլեն. ուրիշ շատ կարգաւորութիւններ ալ ըրաւ իր հպատակներուն հանգստութեանը համար: Պօլսոյ բնակիչները այնչափ աճեցան իր օրը, որ հարկ եղաւ նոր ցորեննոցներ շինել, որ հարիւր հազար գոտ ցորեն կ՚առնէին՝ ութը հազարին տեղը:

Շատ թագաւորներ իրմէ առաջ փորձեր էին Սև ծովը Իզնիմիտի ծոցին հետ միացընել Սապանճայի ծովակովը. Նախ Բիւթանացւոց թագաւորները, ետքը Տրայիանոս Հռովմայեցւոց կայսրը, ետքը Սուլէյման օրէնսդիր թագաւորը, ետքը Մուրատ Գ., ու Մէհէմմէտ Գ.: Այս փորձը Մուստաֆա աղ ուզեց ընել՝ վեց հազար քսակ սահմանելով աս բանիս համար. Անգղիացւոց ու Գաղղիացւոց դեսպաններն ալ շատ օգնեցին խորհուրդ տալով. բայց ջրանցքը փորելու ատենը այնչափ ջուր սկսաւ ելլել որ քաղաքը ողողելու վախէն գործքը ետ մնաց:

Տարիներով առաջ պատերազմի նշան մը կար Օսմանցւոց ու Ռուսներուն մէջ. 1768ին աւեցաւ աս ձայնը, բայց հասարակ մարդիկ չէին գիտեր, մեծերուն մէջը կը պտըտէր փսփսուքը: Միայն թագաւորին բժիշկը Կոսլիս անունով որուն հետ տեսնուողները մինչև հիմա կան ու իր բաները կը պատմեն, լսած էր թագաւորէն աս բանը ծածուկ. մինչև ան ատեն Օսմանեան դուռը Տաճկի գիտունները բժշկութիւն կ'ընէին, օտարազգի բժիշկ չէր մտներ. Մուստաֆա եղաւ առջինը որ չէ թէ միայն իրեն՝ այլ և իր կանանցը բժիշկ ըրաւ Կոսլիսը. որովհետև եւրոպացի բժիշկները շատ կը յարգէր: Օր մը թագաւորը Ռուսաց դէմ տաքցած՝ սկսաւ ըսել Կոսլիսին. Ճար չկայ, պէտք է որ ծեծ մը տամ Ռուսներուն որ դաշինքնին չեն պահեր, ու Լե-

Հաստան, Սըստան, Պարսատաղ իմ իրաւունքս ոտքի տակ կ՚առնեն ։

Անկէց ետև Մուստաֆա իր բողոքները բերաւ Ռուսաց դեսպանին. շատ խօսքեր անցնելէն ետե քը Ռուսաց ու Դռանը մէջը, սկսան պատերազմի պատրաստութիւն տեսնել ։ Օսմանցւոց ամէն մե ծերը իրենց զօրքերովը Խոտինէ քաղաքը ժողվե ցան, ու անկէց ամէն հարկաւոր տեղուանք զօրք ու ստակ ղրկուեցաւ ։ Ան միջոցին լուր մը եկաւ որ Ռուսները, Պրուսները, Գերմանացիք ու Անգ ղիացիք մէկտեղ միացեր էին. աս բանս վախցուց Թագաւորը, ու վէզիրը ջանացաւ ստուգել աս լուրը, ու գտնէ Գերմանացիները բաժնել ան միաբանութենէն ։ Բայց ինքը դեսպանին հետ աս ջանքը ընելու օրերը՝ Խնքքէ մահալլէսին խանը, ենիչէրիները և ուրիշ տաճկըներ մեծ անարգանք ու նեղութիւն տուին դեսպանին ու իր ընտանեացը՝ որ հոն տեղուանքը տնի մը մէ ջէն զօրքին անցնելը հետաքրքրաբար կը նայէին ։ Կեանքերնին ալ վտանգի մէջ էր՝ թէ որ Տաճկաց մեծերէն մէկը իր զօրքովը հասած չըլլար զիրենք խալըսելու համար. ինչպէս որ ուրիշ ամէն մե ծերն ալ աս բանիս վրայ շփոթեր էին ։ Երկու օրէն դեսպանը վէզիրին գնաց՝ հաս բարով ըսե լու. բայց եղած բաներուն վրայ ամենեւին բան մը չյիշեց ։ Շատ զարմացաւ վէզիրը անոր համ բերութեանը վրայ, ու մեծ պատիւ ընելով իրեն և իր կնոջը՝ սամուրենի և ուրիշ մեծագին ըն-

ծանեար տալէն ետքը՝ Օսմանցւոց Գերմանացւոց հետ ըրած հաշտութեան թղթին մէջ աւելցուց. նել տուաւ միջնորդենաւոր խաղաղութիւն, որ Գերմանացւոց աղջի դեսպանները շատ ետեւէ ընկեր էին աւելցընել տալու Գրանը, ու չէին կրցեր:

Թագաւորը հրաման ղրկած էր Իպրիմու խանին՝ Լեհաստանի կողմը վազել. անիկայ ալ հարիւր հազար Թաթարներով Պուղ գետէն անցաւ Ռուսաստանի բոլոր հարաւային կողմը թալեց աւրեց, հազարաւոր հոգի ջարդեց, շատերն ալ գերի ըրաւ, հարիւրէն աւելի գեղեր անապատ դարձուց, ու բոլոր ցորեննոցները այրեց. բայց ամիս մը ետքը իր յոյն բժշկէն թունաւորուելով մեռաւ: Իսկ Ռուսաց թագուհին Կատարինէ Բ., բոլոր ձմեռը պատերազմի պատրաստութիւն տեսնելէն ետեւ՝ իր մեծերը իրենց զօրքովը ցրուեցան, ամէն դիէն պաշարեցին Օսմանցւոց երկիրը: Ապրիլի մէջ Տնեսդեր գետը անցան ու սկսան զարնել Խոթուն բերդը. Տաճկըներուն նոր օգնութիւն հասաւ Սելանիկի փաշան, ու յաղթեցին վռընտեցին Ռուսները: Աս աւետիսը երբոր հասաւ Պօլիս, Թագաւորը ու իր մեծերը շատ ուրախացան, խնդցին ամէն դիի իմամներուն, որ անկէց ետքը ուրբաթ օրուան Նամազին մէջ Թագաւորին տիտղոսներուն հետ Գազի անունն ալ աւելցընեն, որ է ըսել Յաղթական: Նորէն ուրիշ անգամ մըն ալ փորձեցին Ռուսները Խոթուն բերդը առնել, ու նո-

րէն Խորխմու խանը հասաւ զինքը հալածեց։ Բայց աս յաղթութեան աւետեաց հետը Ամին փաշա վեզիրին անհոգութեանը ամբաստանութիւնն ալ հասաւ Թագաւորին ականջը, որ բըռնել ու գլխատել տուաւ զինքը իրեն դաւակիցներովը, որ էին Մոլտաւիայի Իշխանը Գալիմաքի ու արքունի Թարգմանը Տրաքոյ։

Անոր տեղը եղաւ վեզիր Մոլտովանճի Ալի փաշա իր Թշնամին, որ Ռուսաց ետեւէն բանակին կէսը անցուց Տնեստրին անդին կողմը, հինգ կողմէն պաշարեց Ռուսները, ջարդեց անոնցմէ ութ հարիւր հոգի, ու շատ Թնդանօթներ ուրիշ աւարներու հետ առաւ։ Բայց իրեններէն ալ երկու հազար հոգի կորսնցընելով ետ դարձաւ, ու տասուերկու հազար կտրիճ մարդիկ հետը առած՝ գիշեր ատեն նորէն գետը անցաւ։ Բայց գետին ջուրը բարձրացաւ, կամուրջը կոտրեց. Թէպէտ լաստեր շինեցին գետին վրայ, բայց անօգուտ եղաւ. Օսմանցւոցմէ շատը Ռուսաց Թրին բերանը գնացին, շատը գետը Թափեցան խեղդուեցան, ու քիչ մարդ փախաւ ազատեցաւ։ Խոթունի մէջ եղող զօրքն ալ յուսահատած՝ ելան փախան, ու Ռուսները մտան տիրեցին բերդին. ետքը առին Կալացն ալ, Եաշն ալ, Պուքրէշն ալ, Թէպէտ հարկ եղաւ որ Տաճկաց վախէն Կալացը կրակի տան, ու նորէն ետ քաշուին։ Աս միջոցիս Ալի փաշան ընկաւ վեզիրութենէ, ու անոր տեղը անցաւ Խալիլ փաշան որ անփորձ ու տգէտ էր պա-

տերազմական բաներու . պաշտօնատէրներու ալ փոփոխութիւն ըներով՝ Կրիմու խանը ձգեց պաշտօնէն, որ քաջ մարդ մըն էր ։ Ռուսները դիմեցին Փոքշան ու Խալրայիլ, ու Կըրկէօկի քաղաքին մօտ իրեք հազար հոգի Օսմանցւոցմէ սպաննելէն ետքը՝ կրակ տուին քաղաքին, ու յաղթանակով Պուքրէշ մտան ։ Ետքը Օլաթինա քաղաքն ալ առին Մոլտաւիայի եկեղեցականներուն մատնութեամբը . ու Մայնացի Յոյները սորկով ու խոստմունքներով իրենց հետ միացուցած, շատ նաւերով Պալթիկ ծովէն մտան Միջերկրականը ու հասան Յունաստանի դիմացը . կէս մը Արշիպեղագոսի կղզիներուն մօտը կեցան, կէս մըն ալ Մայնային կողմերը ցամաք թափեցան, ու յիսուն հազար զինեալ զօրք տեղացիներէն իրենց հետը միացուցած՝ գնացին պաշարեցին առին Միսիթրա ու բոլոր տաճիկ բնակիչները ջարդեցին ։ Նաւարին ու Էնատարի ու Արկադիա ալ առին, ու բոլոր Յոյները յորդորեցին ապստամբելու ։ Օսմանցիք երբոր աս ամէն բանը լսեցին, չկրցան հաւտալ . բայց երբոր իմացան իրաւ ըլլալը, մէկէն նաւատորմիղը դուրս հանեցին, Չէշմէ քաղաքին դիմացը զարնուեցան ։ Ռուսաց ծովակալին նաւը զարնուեցաւ Ջէզայիրլի Հասան նաւապետին նաւուն, ու երկուքը մէկտեղ օդը ելան . ետքը ուրիշ նաւ մըն ալ զարկին Օսմանցիք կոտրտեցին, որուն մէջ եօթը հարիւր Ռուս կար ։ Բայց հետեւեալ գիշերը այրեցին Ռուսք

Օսմանցւոց բոլոր նաւահանգիստը. և որովհետև Օրլով զօրապետին քաջութեամբը եղաւ աս յաղթութիւնը, Ռուսաց թագուհին իրեն յաղթական կամար կանգնել տուաւ Փեթրպուրկ, ու Չեսմէիքի անուանեց զինքը, Չեշմէ քաղաքին առջևը պատահելուն համար ան յաղթութիւնը:

Օսմանցիք շատ խռովեցան աս կորստեանը վրայ. փոխեցին ծովապետնին, ու ծերունի Ճաֆեր փաշան դրին: Եգիպտութենէ ընկած Ալի փաշան ալ ղրկեցին Զանտա գաւառին բերդերը պաշտպանելու, որ Ռուսները կը զարնէին. բայց հարկ եղաւ որ ետ քաշուին քսան հատ պաշար տանող նաւերէն կորսնցընելով: Օրլով ալ Լեմնոս կղզին վաթսուն օր պաշարելէն ետքը երբոր առնելու վրայ էր, Ճէզայիրլի Հասան կտրիճ նաւապետը, որ իր նաւը այրելու ատեն հազիւ խալըսած էր, սաստիկ կռուով զինքը վռնտեց:

Աս միջոցիս Մոլտաւիայի կողմն ալ սաստիկ պատերազմ եղաւ. Ռուսները յաղթեցին, 140 թընդանօթ Օսմանցւոց ձեռքէն առին ուրիշ շատ աւարներու հետ. Ռուսներէն ընկան հազար հոգի, տաճկըներէն երկու հազար: Ետքը երբոր Իսմայիլ քաղաքն ալ ու Պէնտէր բերդն ալ երկու ամիս պաշարելէն ետև՝ տասը ժամ պատերազմելով առին, վրէժնին հանելու համար՝ շատ անգթութիւն ըրին բնակչաց վրայ, ու Օսմանցւոց մեծերէն ալ գերիներ բռնեցին. ետքը դեսպան ղրկեցին վէզիրին հետ հաշտութիւն խօսելու

համար, առանց ուրիշ տէրութիւնները մէջ մըտ-նելու ։

Վէզիրը իշխանութիւն չունենալով հաշտու-թիւն ընելու, Ռուսաց նամակը Պօլիս ղրկեց Թագաւորին. Թէպէտ Ռուսք չէին դադրած ու-րիշ քաղաքներ ու բերդեր ալ առնելու, անանկ որ Թագաւորն ու բոլոր տաճկըները սուգի մէջ էին։ Եւրոպական տէրութեանց դեսպաններն ալ մէկմէկէ աւելի կը ջանային որ միջնորդ հաշ-տութեան ըլլան. Թագաւորը եւելօք կը վստա-հէր Գերմանացւոց դեսպանին, ու անոր ձեռքովը վերջապէս զինադադարում ընել տուաւ Ռուսաց՝ ինչուան որ որոշուին հաշտութեան պայմանները։

Բայց եւրոպական տէրութիւնները աս բանս եփել ջանալու առէնը, Ռուսք առին Եըրկէօկի ու Պուլչա քաղաքները, Սապճի եղած ցորենոց-ները այրեցին, ու քանի մը տեղ ալ Օսմանցւոց զօրքերը զարկին. բանակէն ալ շատերը սկսան փախչիլ, անանկ որ սաստիկ հրաման եղաւ Սե-ծովու նաւահանգիստներուն՝ չթողուլ որ մէկը անցնի։ Դիպէշ կ'երթար Օսմանցւոց բանը Ղրի-մու մօտ. Ռուսք 90,000 զօրքով հասան առին Օրգաբու քաղաքը, Ըաման բերդը, ու մօտան Ղրիմ։ Սէլիմ Կէրէյ Ղրիմու խանը, որ առաջ զեղխութեան եռանէ էր, ետքէն ետքը ալթըն-ցաւ դիմացնին եղաւ 30,000 զօրքով, բայց հարկ ե-ղաւ որ մինակ փախչի Պաղչէսարայ. հոն ալ եր-բոր հասան Ռուսք, փախաւ Գարաստալ ըսուած

լեռները՝ ուր որ ամրացեր էին իր ընտանեաց-մէ շատերը. ան տեղն ալ ապահով չըլլալով՝ գնաց չիտակ Պօլիս. Թաթարներն ալ թուլցած՝ շա-տը փախան Պոնտոսի ծովեզերքը: Ռուսք պա-շարեցին Կէֆէ քաղաքն ալ, Թաթարները երդում ըրին հաւատարիմ ըլլալու անոնց Թա-գուհւոյն. Ռուսք մտան Կէֆէ, ետքը Կերչ, Ենիգալէ, Կէօզլէվէ ու Սուտաղ. Իպրահիմ փաշան ալ՝ որ շատ ուշ հասաւ՝ բռնեցին Փեդր-պուրկ տարին. Սելիմ խանին երկու որդիքն ալ բռնեցին քառասունուերկու իշխաններու հետ, անոնք ալ ղրկեցին Թագուհիին, և ուրիշ խան մը դրին Խրիմ անկախ Օսմանցիներէն: Թագա-ւորը երբոր աս ամէն բանը տեղեկացաւ, ու իմա-ցաւ ալ որ Էտիրնէցիք վէզիրին դէմ էին՝ չէին ուզեր որ զօրքը իրենց քաղաքը ձմերէ, ու մեծ խռովութիւն ելեր էր, վէզիրը ձգեց ու նոր վէ-զիրը տասը հազար զօրքով ղրկեց որ Դանուբ գետին եզերքը ամրացընէ ու ձմերէ Ռուսճուք: Նրմէ դրուած Խրիմու խանն ալ Մագսուտ Կէ-րէյ անունով հասաւ միացաւ անոր հետ:

Բայց երկու դիէն զինադադարում ըրեր էին. Ռուսաց դեսպանները եկան հասան Եաշ. Օս-մանցիք ալ ընտրեցին իրենց դեսպանները. Նմա-նապէս Գերմանացիք ու Պրուսներն ալ հաստու-ցին իրենցները. Եկան ժողվեցան ամէնքը Ֆոքշան քաղաքին մօտ՝ վրաննին դրին: Միայն թէ Ռու-սաց դեսպանները չէին ուզեր որ Գերմանացիքը ու

Պրուշները մէջ մտնեն. անոնց շատ դժար ե-
կաւ, բայց Տաճկները կը մխիթարէին զանոնք
իրենցմէ խորհուրդ հարցընելով. ժողովքին վերջը
շատ անյաջող եղաւ. մանաւանդ Թաթարներուն
պատճառաւը, զորոնք կ'ուզէին Ռուսները ազատ
ընել Տաճկներէն, ու Տաճկները չէին հաւա-
նէր. անանկ որ՝ քակուեցաւ ժողովքը, Ռուսաց
դեսպանները ուղղակի վէզիրին հետ սկսան Թըղ-
Թակցիլ, մինչև նոր դեսպաններ եկան Օսման-
ցիներէն, ու Պուքրէշ նորէն խորհրդի մտան:
Ռուսք նորէն տասը պայման առաջարկեցին, Տաճ
կները ամէնն ալ յանձն առին. բայց Թաթար-
ներուն վրայ երկար խնդիր եղաւ. վերջապէս
սահմանեցին որ նախ Թաթարները ինքիրեննուն
ընտրեն Ղրիմու խանը, բայց Օսմանցւոց Թա-
գաւորը հաստատէ զանիկայ. երկրորդ՝ Ղրիմու
մզկիթներուն մէջը Օսմանեանց Թագաւորին
անունը յիշուի. և երրորդ՝ հաւատքի ու բարե-
կարգութեան վճիռները բոլորն ալ Պօլիսէն ըն-
դունին Թաթարները:

Քառասուն օրէն Ռուսք ուրիշ եօթը պայման
ալ դուրս հանեցին՝ Փեդըրպուրկէն նոր հասած,
որ Օսմանցւոց անտանելի էին. անանկ որ արիւն-
ներուս վերջի կաթիլն ալ կը թափենք, յանձ
չենք առնուր ըսին: Շատ երթևեկ ու խօսակ-
ցութիւն եղաւ մէջը գանելու. բայց բան մը չյա-
ջողելով՝ նորէն պատերազմի պատրաստութիւն
տեսան. Թագաւորը հրովարտակ հանեց ամէն

դի զօրաժողով ընելու, ու մեծերէն շատերը իրենց ծախքովը զօրք պատրաստեցին Հայրենեաց համար։ Ռուսները անցան մէկէն Դանուբ գետը՝ ինչուան Պազարճըգ ու Դորոստու գնացին. բայց Ռուսճուգ ալ առնել ուզելով՝ զարնուեցան չարաչար Տաճկըներէն, ու շատ գերի ընկան։ Ետքը Սիլիստրէի բերդը պաշարեցին, եօթանասուն թնդանօթով շարունակ կրակ կը թափէին քաղաքին վրայ. բոլոր բնակիչները դուրս փախան, Ռուսք ներս յարձըկեցան. բայց Օսման փաշա Տաճկաց սպարապետը քաջութեամբ կռուեցաւ ու վռնտեց զիրենք, ութ հազար հոգի սպաննեց, հազար ալ վիրաւորեց. անանկ որ Պաղի անուն ստացաւ, ու սամուրենի և ականակուռ թուր մըն ալ պարգև ընդունեցաւ, եօթը հազար ալ ձեղէնակ՝ իրեն զօրացը բաշխելու։

Այն ատենը Ռուսաց երկու բանակը մէկտեղ միացած՝ Պարամուրատ ըսուածին մօտ սաստիկ զարնուեցան Օսմանցւոց հետ, ու վռնտեցին զիրենք ինչուան Պալքան ու Շումնա, բանակին մէջ եղած ամէն բանը յափշտակելով։ Աս որ լսեցին Օսմանցիք, մէջքերնին կոտրեցաւ, թագաւորին հիւանդութիւնն ալ մէկալ դին բոլորովին յուսահատութեան մէջ ձգեց զիրենք։ Թագաւորը անկողնին մէջէն լսելով իր զօրքին յաղթուիլը, կ՚ուզէր ինքը ելլել երթալ Եդիրնէ. բայց խորհրդականները ըսին որ ասանկ ատեն ու աս հիւանդութեան մէջ աղէկ չէ քեզի հեռանալ

Պօլիսէն, ու արգիլեցին։ Աչրկու ամենէն մեռաւ Թագաւորը 1773ին, եօթը տարի Թագաւորելէն ետեւ, ու պատերազմը կէս թողուց, որ եղբայր իր եղբօրը Ապտիւլ Համիտին առենը դադրեցաւ ան պայմաններով որոնք որ Պուքրէշ հաստատուած էին։

Մուստաֆա ուսումնասէր Թագաւորներէն մէկը եղաւ. բանագէտներէն ամէն գիտունները կը ժողվէր իր տէրութեան գիտնականները՝ անոնց խօսակցութիւնը լսելու համար։ Իր առենը շինուեցաւ Րաղիպ փաշային գրքատունը ու դպրատունը՝ ձրի տղայք սորվեցնելու։ Շէնքերու ալ սէր ունէր. Անի գաւառէն դուրս եղած մեծ Թաղը ինքը շինեց, որուն երկայնութիւնը 12,000 կանգուն է, լայնութիւնը վեց հազար։ Ինքը շինեց նաեւ Լալէլի ըսուած մզկիթը՝ Սուլթան Սելիմի մզկիթին ձեւովը, վեց հատ գեղեցիկ մարմարիոնէ սիւներով որ քաղքին հին աւերակներէն գտնուած էին։





# ՍՈՒԼԴԱՆ ԱՊՏԻՒԼ ՀԱՄԻՏ Ա.

ԱՊՏԻՒԼ ՀԱՄԻՏ հինգ տարուան էր երբոր մե-ռաւ իր հայրը Ահմէտ Գ., բայց 48 տարուան թա-գաւորեց. ու տեսնելով որ Ռուսաց պատերազմը շատ վնասներ ըրեր էր իր տէրութեանը և թա-գաւորական գանձը պարպեր էր, մինչև զօրաց սովորական թոշակն ալ տալու ստակ չէր մնացեր, ուզեց խաղաղութիւն ընել. բայց գիտնական-ները աս բանիս դէմ կեցան, ու նորէն պատե-րազմ բացուեցաւ. որով Ռուսները աւելի առաջ անցան, ու հասան մինչև Ենիպազար ու Շումնա քաղաքները. այնպէս որ Միւհսինզա-տէ վէզիրն ալ ստիպուեցաւ հաշտութիւն ընե-լու Ռուսաց հետ, բայց Պօլիս դառնալու ատեն մեռաւ. ոմանք կարծեն թէ թունաւորած ըլլան զինքը։ Իսկ Ապտիւլ Համիտ որովհետև գիտէր որ աս խաղաղութիւնը երկայն պիտի չքըշէ, դաշ-

գլխացի զօրավարներ բերել տուաւ՝ իրեն զօրքին ալ եւրոպական զօրաց կրթութիւն տալու համար։ Ու իրաւ, քիչ ատենէն ետքը Ղրիմու խանը Շահին Գիրէյ տէրութենէն հրաժարեցաւ ու բոլոր իր երկիրը Ռուսաց թողուց, նորէն աս երկու ազգաց մէջ մեծ պատերազմ բացուեցաւ։ Բայց որովհետեւ ան ատենը Ռումէլիի, Դամասկոսի, Եգիպտոսի ու Պաղտատու մէջ ալ շատ ապստամբութիւններ կային, անոր համար աղէկ սեպեց Ապտիւլ Համիտ Ղրիմու իշխանութենէն հրաժարիլ. թէպէտ և տեսնելով որ Վրաց Հերակլ թագաւորն ալ իր տէրութիւնը Ռուսաց յանձներ էր, շատ կը վախնար անոնցմէ։ Բայց այսու ամենայնիւ Օսմանցիք պատրաստ էին քաջութեամբ ետ առնելու իրենց կորսընցուցած երկիրները, թէ որ Արնաւուտի երկրին կուսակալը Մահմուտ փաշան բողդովլին գլուխ քաշած չըլլար, ու շատ անգամ Օսմանցւոց հետ չզարնուէր։ Ապտիւլ Համիտ հրաման տուաւ Հասան փաշային՝ որ Եգիպտոսի վրայ գացեր էր, բոլոր նաւատորմիղը Սեւ ծովը թափելու, ու Դանուբի բերդերը ամրցընելու. և թէպէտ Գերմանացւոց դեսպանը դէմ կեցաւ ան պատերազմին, բայց վերջապէս 1787ին Օսմանցիք իմացընելով ամէն տէրութեանց թէ Ռուսաց հաշտութեան պայմանները չէին պահեր, ու Ղրիմն ու Կովկասը իրենց ձեռքէն տակը առեր էին, 500 հազար զօրքով պատերազմի պատրաստուեցան, թող նաև Ղրի-

մու Թաթարները որ Օսմանցւոց օգնական էին ։ Ռուսներն ալ իրենց իրաւունքը հրատարակեցին ու Փոթեմքին ու Ռումեանցով զօրավարները Տաճկաց դէմ խաւրեցին ։

Օսմանցիք անակնկալ դիպուածով մը աւելի սիրտ առին քաջութեամբ պատերազմելու ։ Այն զի Ռուսաց նաւատորմէն քանի մը նաւեր Սև ծովուն մէջ փոթորկի հանդիպելով, Ասիայի ծովեզերքները ընկան ․ ասոնցմէ մէկն ալ որ 40 թնդանօթ ունէր, Կոստանդնուպօլսոյ կիրճը զարնուեցաւ ։ Նաւապետը որ անգղիացի մըն էր, ուզեց վառօդարանին կրակ տալ, բայց քովինները չթողուցին ․ Օսմանցիք վրայ հասան բռնեցին, ու նորոգելէն ետքը՝ անունն ալ դրին Խուտավէրտի, որ Աստուած տուաւ ըսել է, ու անիկայ իրենց նաւատորմին մէջ խառնեցին ։

Ռուսները ցամաքի վրայ զարնուեցան Օսմանեանց հետ Գերմանացւոց օգնութեամբը ․ և թէպէտ քանի մը անգամ Օսմանցիք զանոնք փախուցին, բայց որովհետև անոնց բանակին մէջ ժանտախտ ընկեր էր, չուզեցին շատ ետևնուն իյնալ ։ Բայց Օսմանցիք մեծ ջարդ տուին Գերմանացւոց, ինչուան որ վերջապէս Լաւտոն զօրավարը, որ ան ատեն 70 տարուան էր, Նովի բերդը առնելով՝ զանոնք սարսափեցուց ։ Իսկ Ռուսք ծովէն ու ցամաքէն Օզուն պաշարեցին, ու վերջապէս առին՝ իրենցմէ ալ շատ մարդ կորսնցընելով ։

Նոյն ատենը մեծամեծ հեղեղներ եղան Պօլ-

այդ մէջ, բոլոր քաղաքը ջուր կոխեց, անանկ որ շատ տներ ու խանութներ ալ քշուեցան ծովը թափեցան, և լեռներէն իջած հողով մէկ գրկաչափ փողոցին յատակները բարձրացան: Ուրիշ կողմանէ ալ սատակի նեղութիւնը սաստիկ էր, անանկ որ ամենուն արծաթեղէնները աժան աժան առին որ սատակ կոխեն: Այս դիպուածներէս քիչ ատենէն ետքը սուլթան Սպտիւլ Համիտ ալ մեռաւ՝ 15 տարի թագաւորելէն ետքը, ու թաղուեցաւ Պահճէ գափուսու ըսուած տեղը Վալիտէ Ճամիին աղքատանոցին դիմացը:

Այս թագաւորիս օրը գիւղագնացութիւնը շատ յաճախեց, որովհետև ինքը եղաւ որ Վոսփորի գեղերը ծաղկեցուց. իրեն ատենը ոսկերչութիւն ու բանուածքն ալ մեր ազգին մէջ շատ ծաղկեցաւ, որովհետև թագաւորը գոհարներով ու նարգիլեներով բանուած բաներ շատ կը սիրէր:

Այս թագաւորիս ատենը Պօլիս Ախփիւրկեճի անունով մէկը կար, որ ծխամաներ կը մաքրէր, և որչափ սատակ որ վաստըկէր՝ աղքատաց կը բաժնէր: Այս մարդուս կրօնքը յայտնի չէր, ու երբոր զինքը վէզիրին դիմացը հանեցին՝ դատաստան տուաւ թէ ինքը Սպասուլլահ կ՚ըսուի, ու Սպասուծոյ ծառայ: Վէզիրը զինքը ստիպեց որ զգեստին վրայ նշան մը դնէ, ու մզկիթ ալ երթայ որ մահմետական ըլլալը իմացուի. բայց անիկայ վէզիրին դիմացն ելաւ ու խոստովանեցաւ թէ ինքը քրիստոնեայ է. որով մէկէն գլխատեցին

զինքը ։ Ու որովհետեւ առջի օրը յիսուսեանց եկեղեցին գնացեր ու հաղորդուեր էր , անկէց ոմանք կարծեցին թէ ասիկայ ազնուական մարդ մը պիտի ըլլայ Եւրոպայէն եկած , ու ապաշխա-րութեան համար ան վիճակը յանձն առած ։



# ՍԵԼԻՄ Գ., ԵՒ ՄՈՒՍԹԱՓԱ Գ.

ՔՍԱՆԸՈՒԹԸ տարեկան էր Սելիմ երբոր թագաւորեց 1789ին, ու թուր կապելու հանդիսին մէջէն սկսաւ իր խնամքը ցուցընել ժողովըրդեանը վրայ, անձամբ հասնելով կրակը մարելու համար, ու վեցամսեայ սովը քաղքէն վերցընելու ճարը հոգալով, որուն համար քսան հազար քսակ ծախսեց իրմէ։ Սելիմ խաղաղասէր թագաւորներէն մէկը եղաւ. թագաւորածին պէս՝ Ռուսեներուն հետ հաշտութիւն ըրաւ, ու դաշանց գիրն ալ իր ձեռքովը ստորագրեց՝ որ մինչև ան ատենը եղած բան չէր։ Իր խաղաղասիրութեանը աւելի ալ յորդոր եղաւ ասդիս անդին պատերազմներուն անյաջող երթալը. Լաւտոն Գերմանացւոց Յովսէփ կայսեր զօրավարը առաւ Կրատիշքա ու Պէլկրատ անուն քաղքըները. Սուվորով Ռուսաց զօրավարը առաւ Ռղտաւխա ան-

բողջ. Փոթեմքին դարձեալ Ռուսաց ուրիշ զօրա-
վարը առաւ Քիլի բերդը ու անառիկ քաղաքը Իս-
մայիլ. ուրիշ ռուս զօրավարներ ալ ուրիշ տեղեր
Օսմանցւոց ջարդ տուին, ու Դանուբ գետին քո-
վերը շատ տեղուանք առին: Այս անյաջողութիւն-
ները տեսնելով Սելիմ, իր թագաւորութեանը
երրորդ տարին հաշտութիւն ըրաւ Ռուսաց հետ
հաստատուն բարեկամութեամբ, իրենց տալով
Օզու բերդը իր բոլոր երկիրովը, ու տանկէն
աւելի ուրիշ ծանր պայմաններով: Նմանապէս
Գերմանացւոց հետ ալ հաշտութիւն ըրաւ, Օր-
շովա քաղաքը իր պզտի սահմանովը իրենց տա-
լով: Օտար ազգաց հետ եղած խաղաղութիւնը՝
Օսմանցւոց իրենց մէջ ապստամբութիւններն
ալ (Եգիպտոս, Ասիա ու Արնաւուտներուն երկի-
րը) հանդարտեցուց:

Անկէց ետքը սկսաւ Սելիմ կարգաւորել իր
տէրութիւնը. ու ամէն բանէն առաջ իր զօրքը
ուզեց կարգաւորել՝ Մուսդաֆա փաշային խոր-
հրդովը: Նոր գունդ մը ժողվեց, Նիզամիճէտիտ
դրաւ անունը, իրենց բնակարան շինեց, ու գաղ-
ղիացի վարպետներ բերեց՝ իրենց զէնք բանե-
ցընել ու թնդանօթ պարպել սորվեցընելու: Զօ-
րացը կրթութեան ընդարձակ տեղեր ալ բացաւ
Դոփխանէ, Քեաղաթխանէ, Իւսկիւտար և ու-
րիշ տեղուանք: Ամբարանոցներ ալ շինեց Պօլիս,
ու Դանուբ գետին մօտերը. մեծ վառօդանոց մըն
ալ՝ որ մեր ազգէն ազնուական Հաճիտատ Առաքել

Աջան շատ ծաղկեցուց գործիքներով․ մանաւանդ որ Օսմանցւոց վարուցը Անգղիացւոց ու Հոլանտա-ցւոց վարուցէն վար չիյնար։ Ասոր օրը մեր ազգային մատենագիրը Մուրատճա Օսմանցւոց պետու-թեան ու կրօնքին վրայ գաղղիարէն գիրք մը հա-նեց, որ Թագաւորին ալ հաճոյ եղաւ, և բոլոր Եւ-րոպայի առջի ստոյգ տեղեկութիւն տուողը ինքն եղաւ աս բաներուս վրայ։ Փղթի գործարան ալ բացաւ Թագաւորը Հինքեար խանէլէսի․ Իւս-կիւտարի տպարանին ալ՝ որ շատոնց գոցուած էր՝ նորէն բացաւ տաճկերէն գրքեր տպելու։

Այս միջոցին Եւրոպացւոց տէրութիւնները մէկմէկու անցեր էին Գաղղիացւոց խռովութեան պատճառաւ․ Գաղղիացիք կ'ուզէին իրենց կողմ մը ձգել դուռը, Գերմանացիք ու Պրուսներն ալ իրենց կողմը․ բայց Սէլիմ խոհեմութեամբ մէ-կուն կողմն ալ չիբռնեց, իր բանը նայեցաւ։ Ան ատենը Նափոլէոն Գաղղիացւոց անուանի զօրա-վարը իր տիրելու սաստիկ բաղձանացը պատճառ բռնելով Արաբացւոց ապստամբելը Եգիպտոս, շատ նաւերով եկաւ ու Մալթա քաղաքը առաւ, ու երկու օրէն հասաւ Աղեքսանդրիա, տիրեց քաղաքին, ըսելով թէ ես Օսմանցւոց հետ բան չունիմ, Արաբացիներուն հետ է բանս՝ որ մեր նաւերը կը նեղեն։ Բայց Օսմանցիք չխաբուե-լով անոր խօսքէն, բռնեցին Գաղղիացւոց դեսպանը, Ետիգուլէ փակեցին․ Նմանապէս որչափ Գաղ-ղիացի որ կը գտնէին՝ կը կողոպտէին, բանտ

կը դնէին․ իրենց բոլոր նաւերովն ալ Ռուսաց ու Անգղիացւոց՝ հետ միացան Գաղղիացւոց դէմ։ Եւ թէպէտ Անգղիացիք անոնց նաւերը զարկին կոտրտեցին, ու Արաբացիք ալ ամէն ուժովնին անոնց դէմ կեցան, այսու ամենայնիւ Գաղղիացիք յաղթեցին ու առին Եգիպտոս։

Բայց երկան չքաշեց իրենց հոն տիրելը․ Աքքեայի փաշան Ճեզզար Ահմէտ՝ սուլթան Սելիմին հետ հաշտուելով ու բոլոր ան կողմի փաշաները իրեն հետ միաբանելով, դէմ ելաւ Գաղղիացւոց․ ժանտախտն ալ մէկալ դիէն ջարդել սկսաւ զանոնք։ Նափոլէոն տեսնելով որ Ռուսները ու Անգղիացիք ալ վրայ կը հասնէին, դարձաւ Գաղղիա, Քլէպեր զօրապետին յանձնելով ամէն բան։ Քլէպեր թուղթ գրեց Գաղղիա, բանակին խեղճութիւնները իմացընելու․ Թուղթը Անգղիացւոց ձեռքն ինկաւ, որ աւելի սիրտ առած՝ դիմեցին Օսմանցւոց ու Ռուսաց հետ ջնջելու Գաղղիացիները Եգիպտոսէն։ Քլէպեր թղթին պատասխանը չառնելով, մտածեց հաշտութիւն ընել ու ելլել երթալ․ բայց Անգղիացիք ուզեցին գերի ընել Գաղղիացիները։ Ան ատենը Քլէպեր կատղած՝ պատերազմի ելաւ, ու ջարդեց Օսմանցիները, Եգիպտացիներն ալ՝ որ անոնց կողմը բռներ էին՝ պատժեց․ ասանկով փառաւորապէս հաշտութիւն մը ըրաւ, ու տիրեց Եգիպտոսի։ Բայց ետքը արեւելեան զգեստով ծպտեալ մարդ մը սպաննեց զինքը դաւաճանութեամբ․ ու Թէ-

ոպէտ մարդը բռնեցին ու սպաննեցին Պաղղիացիք, բայց Կլէպէրի մեռնելէն ետքը Օսմանցիք ու Անգղիացիք երեք կողմէն յարձակեցան Եգիպտոս, ու վերջապէս հարկ եղաւ Պաղղիացւոց ելլել երթալ Եգիպտոսէն իրենց կահ կարասիովը ու տասնըմէկ թնդանօթով միայն ։

Ասկէ ետքը երբոր՝ Նափոլէոն տիրեց Պաղղիա, սուլթան Սէլիմ հաշտութիւն ըրաւ իրենց հետ, ու բոլոր Եգիպտոսը նորէն ետ առաւ ։ Ան միջոցին սկսաւ Եւրոպա խաղաղութեան վրայ ըլլալ. սուլթան Սէլիմ իր երկիրը ամրացընել սկսաւ, Դնեստեր ու Դանուբ գետերուն կողմերը զօրք դնել, ու մանաւանդ իր զօրացը եւրոպական կրթութիւն տալու խորհուրդը առաջ տանիլ ։ Արդէն Նիզամի Ճէտիտ զօրքը կրթուած էին, բայց Ենիչէրիները յանձն չէին առած ամենեւին այն կրթութիւնը, շատերն ալ ծաղր կ'ընէին զօրքին փորձ ըրած ատենը ։ Բայց Եգիպտոսի պատերազմին ատենը այս կրթուած զօրքին ըրած քաջութիւնները երբոր ժողովուրդը սկսաւ գովել, Սէլիմ սիրտ առաւ ու աւելցուց անոնց թիւը ։ Շէյխիւլիսլամին վճռովն ալ հրաման հանեց որ բոլոր Ասիոյ փաշաներն ալ Նիզամի Ճէտիտ հաստատեն. անոնք ալ հնազանդեցան, ու օգուտները կը տեսնէին, Ենիչէրիներուն չկրցածը՝ կրթուած զօրքը կրնալով ընել ։

Թագաւորը տեսնելով այս բաները, մանաւանդ Ռումէլիի աւագականներուն պակսիլը անոնց քաջու-

թեամբը, հրովարտակ մը հանեց որ ամէն քաղաք ու գեղ ընտրուին ենիչէրիներէն կտրիճ մարդիկ մինչև քսանըհինգ տարեկան, ու նիզամի ճէտիտ զօրքին հետ կրթուին։ Այս հրամանը կատղեցուց ենիչէրիները, մանաւանդ որ թագաւորին հրամանը հրատարակող մունետիկները ծեծեցին, դատաւորներէն մէկ քանին սպաննեցին, ու հարկ եղաւ որ մեծերը լեռն առ ժամն։ Բայց երբոր Պաղղիացւոց դեսպանը բացուեցաւ Ռուսներուն ու Պրուսներուն դէմ, Պատը փաշա Սիլիկիայի իշխանը թագաւորին հրամանաւը շատցուց նիզամի ճէտիտ զօրքը, ու անանցանով ճամբայ ելաւ որ Պօլիս գայ. ենիչէրիները երբոր իմացան, տանը մեր վրայ կուգան ըսելով՝ ոտք ելան միացան աբլամատան աղաներուն հետ, քաշուեցան Յամիմէ, ու տասը հազար հոգի զրկեցին՝ Յակհիապաշա լեռան կիրճը բռնելու։ Պատը փաշան չիկընալով անցնիլ անկէց, դարձաւ Պուրկազ՝ Մուսճուգ երթալու մտքով, ուր էր Մուստաֆա փաշա՝ բանակին զօրավարը։ Բայց ենիչէրիները այն ճամբան ալ արգիլեցին, ու Պատը փաշան վերմառեցին Սիլիվրի։

Երբոր ձայնը Պօլիս հասաւ, հոն մնացած ենիչէրիները յոյս առին. ու քիչ մնաց որ բոլոր ժողովուրդը ապստամբէր. բայց չէխիշխամը մէջ մտաւ, խաղաղութիւն ըրաւ երկու զօրաց ու թագաւորին մէջը։ Նոյն միջոցին Ռուսները Վլահի երկիրն ու Մոլտաւիա յարձակե-

ցան, առին Եաշ ու Պուքրէշ. իրենց դէմ ելաւ Մուսդաֆա փաշան, բայց Ռուսները զինքը վռնտեցին Ռուսճուգ : Օսմանցիք աս բանէս նորէն զօրացան Ռուսաց դէմ, ու պատերազմի ձայն տուին, ու Ռուսաց դեսպանը Պօլսէն ելլելու ատենը՝ մէյմըն ալ Անգղիացիք նաւերով հասան Չանագ գալէսի : Անգղիացւոց դեսպանը կը պահանջէր որ Օսմանցիք Գաղղիացւոց բարեկամութենէն զատուին, Անգղիացւոց ձեռքը թողուն Չանագ գալէսին ու իրենց բոլոր նաւերը, Ալահի երկիրն ու Մոլտաւիան ալ Ռուսաց. բայց գիտնալով որ բացատական պատասխան պիտի առնէր՝ ձայն հանեց թէ բոլոր իր ազգայիններուն ուրախութիւն պիտի ընէ նաւու մը մէջ. երբոր եկան ժողվուեցան, առագաստները բացած՝ դուրս ելաւ քաղքէն, հասաւ Թենետոսի առջև իրենց նաւերուն, ու անկէց սկսաւ թղթով խօսիլ Օսմանցւոց հետ, ու այնչափ երկընցուց մինչև որ նաւատորմիղը Չանագ գալէսիին մուտքը հասաւ :

Օսմանցւոց ծովակալը վստահ ըլլալով որ խօսակցութիւննին չլմնցած Անգղիացիք առաջ չէին գար, անհոգ եղաւ, որովհետև տօնի օր ալ էր իրենց, ու Թնդանօթաձիգ զօրքը տներնին գացած էին : Բայց երբոր Անգղիացիք յանկարծ մէկիկ մէկիկ ներս յարձըկիլ սկսան, ընելիքը չէր գիտէր կատաղութենէն : Վազեցին ենիչէրիները և ուրիշ զօրքերը, երկու դին բերդերէն թնդա-

նօթներով կրակ թափելով վռնտեցին թշնամեաց նաւերը. անոնք ալ մէկալ դիէն թնդանօթները պարպելով՝ թանձր ծուխին մէջ ծածկուած փախան բերդերուն մէջ եղողներէն : Բայց դժարը ան էր որ Օսմանցւոց նաւերը կիրճն ալ բռներ էին, անցնելու ճար չկար. այսու ամենայնիւ Անգղիացիք կէս մը քաջութեամբ պատերազմելով, կէս մըն ալ Օսմանցւոց ծովակալը հոն չգտնուելուն պատճառաւ, դուրս ելան գնացին :

Թագաւորը առջի բերանը լսելով Անգղիացւոց ներս մտնելը՝ շատ խռովեցաւ, ու կը մտածէր անոնց ուզածը ընել, Գաղղիացւոց դեսպանին ճամբայ տալ. բայց երբոր տեսաւ որ ժողովուրդը խռովելու տեղ՝ կատղած զէնք առին ու բերդերը կ'ամրացընէին, ինքն ալ սիրտ առած՝ անոնց ամէն պէտք եղածը կը հոգար : Գաղղիացւոց դեսպանն ալ ան միջոցին բոլոր իր ազգայինները բերդերուն պահպանութեան օգնական ղրկեց, ոսկի կը բաժնէր օսմանցի աշխատողներուն, ու սիրտ կուտար ամենուն :

Հետևեալ իրիկունը Անգղիացւոց բոլոր նաւատորմը երևցաւ հեռուանց, իրեք մղոն հեռու երկաթ ձգեց, ու ծովակալը դեսպանին խորհրդով թուղթ ղրկեց դրանը՝ անուշութեամբ խնդրելով որ իրենց ուզածները կատարուին : Թղթաբերները սոսկացին Օսմանցւոց ատենակալներէն՝ որ ժամիքներէն կախած ընդունեցան զիրենք. ու չհամարձակելով արքունիքը երթալ, ուր որ կո-

չուած էին, առնին քալեցին իրենց նաւատորմիղը։ Նաւ քաղաքացիները տաճիկ, եւրոպացի, յոյն, հայ և հրեայ ամէնքն ալ մէկտեղ կ՚աշխատէին մարտկոցներ պատրաստելու. կարգ կարգ նաւերը շարեցին ամէն դին, ու սուկ մարտկոցներուն վրայ հազար երկու հարիւր թնդանօթ դրին՝ բաց՚ի նաւերուն թնդանօթներէն. անթիւ նաւակներու մէջ ալ դիւրավառ նիւթեր պատրաստեր էին՝ թշնամեաց նաւերուն կրակ տալու։

Նորէն Ենգլիացիք թուղթ գրեցին, սաստիկ կերպով պահանջելով որ դաշը ուզածնին ընէ. դաշն ալ համարձակ պատասխան տալէն ետև, Նաւիկին փաշան զօրքով Ձանագ գալէն դրկեց։ Նա որ տեսան Ենգլիացիք, նաւերուն քիթը դարձուցին՝ անհերևույթ եղան, և Պօլսոյ բնակիչները փառք տուին Աստուծոյ որ ան սոսկալի վտանգէն պահեց զիրենք։ Բայց Ենգլիացիք Նեղուցէն մտնելու ատեննին երեսուն հոգի կորսնցուցին, հարիւր հոգի ալ վիրաւորեցան. իսկ ելլելու ատեննին իրենցմէ հարիւր յիսունութերօթը հոգի մեռնող, չորս հարիւր տասուներկու ալ վիրաւոր եղան։

Ան ատենները Ֆրանսացիք նորէն գլուխ վերցուցեր ու կ՚ուզէին տիրել Եգիպտոսի. թագաւորը անոնց դէմ Սամաուս զօրքերը դրկեց. առջի անգամը քաջութեամբ պատերազմեցան, բայց ետքը թշնամիներուն կողմը անցան. ետքն ալ նորէն բաժնուեցան, խնքնագլուխ եղան։ Ար

սանց մէջ երևելի էր Մէհէմէտ Ալի հիմնկուած Եգիպտոսի փաշան, որ դրմէն շատ գործք ու սատակ տուած՝ Արաբացւոց դէմը ելաւ, իր կողմը դարձուց իր ազգայինները, վարկաւ փախուց Թշնամիները Եգիպտոսի վերի կողմերը, ու ինքը եղաւ Եգիպտոսի տէր, տարուէ տարի 2500 քսակ վճարելով դրամը։

Անգղիացիք բաղձալով տիրել Եգիպտոսի, Պօլիսէն հան վազեցին, առին Աղեքսանդրիա քաղաքը. անկէց զօրավարներուն մէկը 1200 զօրքով Րաշիտ քաղաքը մտաւ. բայց քաղաքապետը քաղքին նեղ ճամբաներուն մէջ զիրենք ձգելով, թրէ անցուց գրեթէ ամէնքն ալ։ Մէհէմմէտ Ալի ալ հասաւ իր զօրքովը, պաշարեց Անգղիացիք Աղեքսանդրիոյ մէջ։ Սէլիմ տեսնելով աս բաները, բողոքելէն միացաւ Գաղղիացւոց հետ, ու Անգղիացւոց դէմ պատերազմ բանալ ուզեց. բայց անոնք մէկէն ետ քաշուեցան իրենց նաւերովը, չուզելով պատերազմիլ։ Ետքը Օսմանցիք զՌուսներն ալ Միջերկրական ծովէն վռնտելով՝ ծովի կողմէն հանգստացան։

Եր մէնար վռնտել Ռուսները Վլահի երկրէն ու Մոլտաւիայէն. առտենն ալ յարմար էր Նափոլէոնին առաջ երթալովը արևմուտք։ Պոսնայի փաշային հրաման եղաւ որ Սերբերուն վրայ երթայ՝ Ռուսաց հետ միաբաներնուն համար. ետքը ուրիշ զօրավարներն ալ, Մուստաֆա փաշան ալ, իրենց զօրքովը Ռումնա և Վլահի եր-

կերը դիմեցին ․ վեզիրին ալ ուրիշ մեծերուն հետ դուրս ելաւ, մնաց Պօլիս մինակ Մուսա փաշան մէկ քանի մեծերով, Նիզամի Ճետիտ զօրքն ալ Պօղազ իչիի բերդերը ցրուեցան ։

Ան միջոցին մեռաւ Սելիզդարէ չէլիխալըն՝ որ շատ խոհեմ մարդ մըն էր, ու սուլդան Սէլիմ անոր տեղը դրաւ ուրիշ մը՝ որ հաւատարիմ կը կարծէր, բայց անիկայ վեզիրին փոխանորդը Մուսա փաշան իրեն հետ միաբանելով, որ փառասէր մարդ մըն էր ու Թագաւորին սիրելիներուն հակառակ, սկսաւ իր Թագաւորին ու բարերարին դէմ չարիք մտածել ։

Անգղիացւոց Պօլսէն հեռանալէն ետքը սկսեր էր սուլդան Սէլիմ ոչ միայն Տարտանալի՝ այլ և Սև ծովուն նեղուցը ամրացընել, Պօղազ իչիին երկու դիէն մարտկոցներ շինելով, ու Նիզամի Ճետիտ զօրք դնելով ան տեղուանքը ։ Աս եղաւ խեղճին Թագաւորութիւնն ալ կեանքն ալ կորսընցընել տուողը ։ Ինչու որ, որովհետև Ենիչուան ան ատենը հոն տեղերուն պահապանները էին Լաւանդ ըսուած զօրքերը, զի Սըրացիք, Պոնտացիք, Անատօլուներ ու Լազեր, ասոնց շատ դժարը եկաւ ․ անանկ որ քանի մը անգամ ձեռք ձեռքի եկան կռուեցան ալ, ու հազիւ պօսթանճիպաշին սպաննալեօք ու անօշութեանը հանդարտեցուց զիրենք ․ Թագաւորն ալ պօսթանճիպաշիին սիրտ տալէն 'ի զատ, ուզեց որ ան զօրքերուն հագուստին ձևն ալ փոխուի, ու եւրոպացի զօրքերուն պէս կրթուին ․ ան ալ

զօրքերուն գլխաւորը կանչեց, հրամայեց իրեն Թագաւորին կամքը։

Երբոր զօրապետը այս հրամանը կատարելու համար՝ ուզեց մէկ քանի անհնազանդներուն կեանքը դպչիլ, ամէնքը մէյտեղ վրան յարձըկեցան. զօրապետը ծովը ցատքեց որ լողալով փախչի, բայց ծովուն մէջը զինքը սպաննեցին։ Ետքը մէյտեղ եկան, խորհուրդ ըրին, ու Թուրի վրայէն ցատքելով՝ երդում ըրին գինի բերաննին չդնելու մինչուան որ խորհուրդնին չկատարեն, բայց առանց միաս հասցընելու հպատակաց. մտածեցին ալ որ չէխիսլամը խորհուրդնին հաստատէ։ Երբոր այս բանս լսեցին մեծերը, պօսթանճի պաշին ծեր ենիչէրիներով վրանին ղրկեցին. բայց ինքը վախցաւ, կէս ճամբէն ետ դարձաւ. իսկ հետը եղողները գնացին, առջի բերանը քիչ մը զիրենք յորդորելէն ետքը՝ իրենք ալ անոնց կողմը անցան։

Սուլթան Սելիմ դեռ չէր գիտեր, ու արքունեացը բակին մէջ զօրքին փորձ ընել կուտար, ու Թէպէտ ներսի պաշտօնեաներէն մէկը իմացուց, բայց ատենադպիրը բանը պզտիկցուց՝ ըսելով որ պօսթանճիպաշին գնաց ցրուեց ապստամբները. ան միջոցին պօսթանճիպաշին ալ հասաւ նոյնը հաստատեց։ Ենիչէրիները հետեւեալ օրը դրօշը վեր առած՝ հազար ութը հարիւր հոգի շիտակ ելան ցամաքէն Պոլիս երթալու. երբոր Պապաթաշ հասան, մարդ ղրկեցին ռմբաձիգ զօրքե-

րուն ձմեռոցն ու ըսին. Թէ որ մեզի հետ է առանց-նիդ՝ խնայեցուցէք. անոնք ալ քաղի եկաք ըսին, միա-ցան անոնց հետ: Նոյնպէս Թոփխանէ եկան, գիշերը հոն կեցան. առտուանց Պալաթլըյէն անցան գնացին Պալաֆաթ եւերի, ու անկէ նաւակներով Ղլխանցը անցան: Երթալով ալ բազմութիւնը կը շատնար, մէկ դիէն ալ կը կանչէին. Ով որ տաճիկ է՝ դրօշակին տակը գայ. ու ժողվելով ըսեան՝ Միմակա-նաք, խամուլթնիդ մի՛ գոցէք կ՚ըսէին: Նայց որոնն կ՚ըսէս. ամէնքը ծակէ ծակ փախան, ահուդողի մէջ՝ աշխարհքիս եղքի օրը համածի պէս: Պալա-տականները ելան Տիվան եօլու գնացին, ու Էթմէյ-տանը ու Թուսուն հազար հոգիի չափ ժողվեցան:

Սուլթան Սելիմ ալ ամէն բանը խմանալով, կը հառաչէր կը մտածէր ու ճար մը չէր կընար գըտ-նել. իր սանէնադարիրը Ահմէտ, ու Մ՝աֆէֆէնձի Ահմէտն ալ առին քալեցին. մէկալ հաւատարիմ պաշտօնեաները ըսին Թագաւորին՝ որ եթէ մէյմը չորս դիէն պաշարեն ապստամբները, կեանքդ կ՚երթայ. շուտ ըրէ՝ նորս առ վեզիրին փոխանոր-դը ու կարգադրողները, որպէս զի ապստամբները անոնց գլուխը ուզելու որ ըլլան՝ տաս կուենց ու քեզ խաղըսեն: Թագաւորը պատասխանեց. Նո-պատս մարդկանց արիւնը մտնելէն լաւ է որ ես Թագաւորութենէս հրաժարիմ: Ապստամբ-ները դուրս կանչեցին շէյխիւլամը ու մեծամեծ-ները. անոնք տեսան որ բանը գէշ է, ցրուե-ցան փախան. իսկ կարգադրողները ու շէյխու-

լամբ հարկաւորեցան դուրս ելլել. հարցուց չէխխլամը թէ ինչ է ուզածնիդ ։ Անոնց մէջէն մէկը սև հաց մը հանեց ծոցէն ու ըսաւ. Ողորմելի աղքատը աս հացը կ'ուտէ. ետքը ուրիշ ձերմակ հաց մըն ալ ծոցէն հանելով՝ ըսաւ. Իսկ մեծերը աս հացը. դուք ինչ պապանծեր կեցեր էք ։ Շէխխլամը պատասխան տուաւ թէ իրաւունք ունիք ։ Ետքը ուրիշներն ալ ըսին. Թագաւոր մը որ կը խաբէ Մահմէտի հաւատացեալները, կրնա՞յ աթոռին վրայ կենալ ։ Չկրնար, ըսաւ չէխխլամը ։ Նորէն հարցուցին՝ թէ տասնըութը տարի զաւակ չունեցող թագաւորը կրնա՞յ աթոռին վրայ կենալ ։ Չէ, ըսաւ չէխխլամը ։ Անոնք ալ ըսին. Ուրեմն գրէ որուն անունն որ կը զուրցենք. ու սկսան մէկիկ մէկիկ վէզիրին փոխանորդէն սկսեալ՝ ամէն մեծերուն որոնց վրայ որ ունէին՝ անուններն զուրցել որ սպաննուին ։ Մէկն ալ անդիէն ըսաւ. Չորս հոգի ալ հպատակներէն՝ որ մեծերուն ձեռքովը ուզածնին կ'ընեն, անոնց անունն ալ գրէ. ասոնցմէ մէկն էր ազնուատոհմիկ Յովհաննէս Չելեպի Տիւզեան, որ ամենևին անպարտ էր, ինչպէս մէկալ իրեք ընկերներն ալ ։ Բայց ապստամբներուն մէկը ըսաւ. մի անոնց արիւնը մտնէք. իրենք հաւատարմութեան համար իրենց հնազանդութեան պարտքը ըրին ։

Աս քաներս ըլլալու ատենը՝ Սելիմ կանչեց պօսթանճիպաշին ու հրամայեց որ իր ձեռքի տակը եղած զօրքը բերէ պալատը ։ Անիկայ գնաց

բերելու , բայց զօրքը չհնազանդեցան · դարձաւ ըսաւ թագաւորին՝ թէ չեն ուզեր գալ ։ Թագաւորը բարկութենէն հրամայեց որ պօսթանճիպաշիին գլուխը կտրեն ու տանին Էթմէյտանի ապստամբներուն տան ։ Նմանապէս գրեց վեզիրին փոխանորդին՝ որ ապստամբներուն ուզած մեծերուն գլուխը կտրէ ու ղրկէ իրենց՝ սրտերնին առնելու համար ։ Անիկայ որ ինքն էր ապստամբութեան գլխաւորներուն մէկը , իր թշնամիներէն ոխը առնելու համար՝ գլխատեց անոնք ու գլուխնին ղրկեց Էթմէյտանին ։

Հետեւեալ օրը ուրբաթ էր, թագաւորը չուզեց ելլել պալատէն՝ մզկիթ երթալու համար · այլ մարդ ղրկեց սուլդան Մուսդաֆային՝ որ իր հօրեղբօրորդին էր, ու ըսաւ · Հրամմէ եկուր նստէ աթոռս , ժողովուրդը քեզ կ'ուզէ · Աստուած յաջողէ թագաւորութիւնդ ։ Պալատականներէն մէկն ալ բարձրէն հարցուց ժողովրդեան իրեք անգամ՝ թէ կ'ուզէ՞ք որ սուլդան Մուսդաֆան ըլլայ թագաւոր ։ Անոնք ալ կ'ուզենք ըսին ։ Ան ատենը շէխիսլամը ու վեզիրին փոխանորդը մտան Տէմիր գափուսիէն ներս որ Մուսդաֆան թագաւորեցընեն ։ Մուսդաֆան երբոր տեսաւ աս բանս՝ լալ սկսաւ ըսելով · Չէի ուզեր ասանկ թագաւորել՝ հօրեղբօրորդուս խեղճութիւնը տեսնելով · լաւ էր որ մեռնէի քան թէ ասանկ ապրէի · չեմ ելլեր ասկէց, ինչ որ կ'ուզեն՝ ընեն ։ Իսկ Սելիմ խաղաղասէր թագաւորը իրեն

ներէն թողութիւն խնդրելով՝ թէ որ իրենց անի-
րաւութիւն մը ըրեր էր, լալով կը յորդորէր
զիրենք որ աղէկ ծառայեն նոր թագաւորին։ Ա-
նոնք ալ իր ոտքը ընկած՝ լալէն ողբալէն ետև,
գնացին վերջապէս հաւանեցուցին Մուստաֆան
թագաւորելու՝ ըսելով որ չթագաւորելովդ Սէ-
լիմին կեանքը վտանգի մէջ կը դնես։ Երբոր Սէ-
լիմ աթոռէն ինջած կ՚երթար, ու Մուստաֆան
կուգար աթոռը նստելու, դիմացէ դիմաց հան-
դիպած ատեննին մէկմէկու պլլուած՝ շատ ար-
ցունք թափեցին, շատ խեղճ խօսքեր զրուցեցին,
ու Սէլիմ Մուստաֆային ճակատը պագաւ,
իրեն խրատ տուաւ որ չհաւտայ իր մեծերուն,
համարձակութիւն չտայ իրենց. Մուստաֆան
ալ անոր ոտքը պագաւ։

Երբոր Մուստաֆային թագաւորելը հրա-
տարակուեցաւ, ժողովուրդը ուրախութեամբ տե-
ղերնին դառնալու ատենը՝ նորէն ապստամբները
խռովութիւն մը հանեցին, ու մեծերէն մէկքանին
բռնեցին կտոր կտոր ըրին. ետքը դուռը գնացին
հինգշաբթի իրիկունէ, դրօշակնին բացած, զէն-
քերնին ուսերնին, երկու դին շարուած կեցան
մինչև սուլդան Ահմէտին մզկիթը, ուր որ թա-
գաւորը ուրբաթ օրը աղօթք ընելու պիտոր եր-
թար։ Էս օրուան մօտ թագաւորը պալատէն
ելաւ. ու երբոր սկսան ամէնքը մէկտեղ կեցցէ
արքայ կանչելու, այլայլեցաւ, դողալ սկսաւ վա-
խէն։ Ետքը երկու օրէն եկան ապստամբները,

Երդում այն թագաւորէն ու մեծերէն՝ որ նորելուկ կարգերը վերնան. ու ասամնելով դադրեցուց խաղաղութիւնը առանց վնաս մը ըլլալու ժողովրդեան։

Բայց ապստամբներուն զօրանալովը ամէն բան խառնակնդոր էր քաղքին մէջ. կարգադրողները վեզիրին փոխանորդին հետ կը մտածէին կերպը գտնել ապստամբները նուաճելու. անոնք ալ աս բանս որ իմացան, երկու ամսէն Սիւլէյմանիէի մզկիթին բակը ժողվուած՝ ուզեցին որ շէխիսլամը, վեզիրին փոխանորդը, ու մէկ քանի ուրիշ մեծերը ելնան իշխանութենէ։ Թագաւորը ձգեց զանոնք, բայց ապստամբները դարձեալ գոհ չեղան, ուզեցին որ նոր փոխանորդն ալ փոխուի, ու տեղը անցնի Պայերար փաշա, որ թշնամի էր նոր կարգերուն։

Մուսթաֆա փաշան՝ որ այն ատենը Ռուսճուգի իշխանն էր, կ'աշխատար իր բարերար Սելիմին խեղճութեանը վրայ։ Ղրկեց Նախրինէ քաջ ու Սելիմին հաւատարիմ եղողներէն մէկը Պէհիճ էֆէնտի՝ թշնամի ենիչէրիներուն, որպէս զի վեզիրին սիրտը որսալէն ետև՝ Պոլիս անցնի ու Սելիմին բարեկամներուն հետ մտածէ թէ ինչ կերպով խորհուրդնին առաջ կրնային տանիլ, ենիչէրիները վերցընելու ու նորէն Սելիմը թագաւորեցընելու։ Անոր ետևէն ինքն ալ չորս հազար զօրքով դիմեց դէպ 'ի Պոլիս, մէկալ զօրքերուն ալ՝ որ տասնուերկու հազար էին՝ հրամմեց որ

եռանդէն զան հեռուանց ։ Երբոր Եատիրնէի մեծ հասաւ, իր հետը եղող զօրքը զեղերը ցրուեց, ու ինքը քանի մը հոգւով մնաւ քաղաքը ։ Ջան խորհուրդ ըրին որ վեզիրը իրենց սրբազան դրօշակաւը մինչեւ Պոլիս, Մուստաֆան ալ եռեւեն համնի. բայց Ռամիզ էֆէնտիին խորհրդովը իրենցմէ առաջ ալ Ջաձի Ալի անունով ձարտար մարդ մը ղրկեցին Գինէտ, որ Կապատձը Մուստաֆան տէրութեան ու Սելիմին առջի թշնամին սպաննէ ու Պօղազ ինչին բերդերը առնէ ։

Երբոր ենիչէրիները լռեցին կանանց ձիչն ու աղաղակը Կապատձը Մուստաֆային սպաննուած ատենը, մէկէն զէնք առին. բոլոր քաղաքը շփոթ խօսքեր ելան, մեծերն ալ ստոյգը չէին գիտեր, գիտէին միայն որ վեզիրը ու Մուստաֆա փաշան Պոլիս կուգային ։ Երբոր մօտեցան, վեզիրը ղրկեց Ռէիս էֆէնտին սուլթան Մուստաֆային ու լսաւ. Մուստաֆա փաշային հետ կուգանք քեզ ու ժողովուրդը ենիչէրիներուն անօրէնութիւններէն խալըսելու, որ ալ չարը անցուցին. ծածուկ պահելնիս ալ՝ յաջողութեան համար էր, որ անօրէններուն գլխաւորները կարենանք վերցընել. ուրեմն փոխէ շէխիսլամը, ու սանձէ անօրէնները ։ Թագաւորը երբոր լսեց որ աս էր իրենց ուզածը, մէկէն կատարեց անոնց կամքը, ու հետեւեալ օրը ելաւ կնաց համիդխաւ՝ սրբազան դրօշակը տեսնելու Մուստաֆային բանակը ։ Մուստաֆան ալ վստա-

հայոց գլխքը իր հաւատարիմ ծառայութեանը վրայ։

Մուստաֆայեան զօրքերը կրթուած էին գինուորական կարգով, ու ժողովրդեան ամենևին նեղութիւն մը չէին տար։ Մէկ քանի օրէն Մուստաֆա հինգ վեց հազար զօրքով վէզիրին գնաց, ու շատ խօսքերէն ետքը՝ երբոր տեսաւ որ անոր միտքը իրենց խորհուրդը առաջ տանիլ չէր, կնիքը ձեռքէն առաւ չաւուշպաշիին յանձնեց. ու քաղքին չորս դին պահապաններ դնելէն ետև, վեց հազար զինեալ զօրքով մտաւ արքունեաց մէջի հրապարակը, գնաց նստաւ Աք աղա գափուսուին դիմացը։ Կանչեց թագաւորին զինակիրը, ու կնիքը իրեն հետ ներս ղրկեց. քիչ մը ատենէն զինակիրը շէյխիսլամին ու ներքինապետին հետ դուրս եկան, ու ըսին. Թագաւորը քեզի կուտայ աս կնիքը։ Պատասխանեց Մուստաֆա. Ես ատ բանիդ համար չեմ եկած. վէզիր ըլլալու մարդ չպակսիր. հապա իմ բարերարիս սուլթան Սէլիմին ոտքը պագնել կ՚ուզեմ։ Աս որ լսեցին, շփոթեցան ու ներս դարձան։ Մուստաֆա քանի մը ժամ սպասելէն ետև, երբոր մէկը չէր երևնար՝ բարկացաւ, կանչեց ներքինապետն ու ըսաւ. Չի մնացա՞ր ըսածս, սուլթան Սելիմը դուրս պիտոր ելլէ։ Պատասխանեց ներքինապետը. Չուզեր ելլել։ Աս ատենը Մուստաֆա յայտնեց իր միտքն, ու ըսաւ. Գնա ըսէ թագաւորիդ որ իջնի աթոռէն, հիմիկուհիմայ թագաւորնիս սուլթան

Սելիմն է. կարգը երբոր իրեն գայ՝ ան ատենը ինքն ալ կը թագաւորէ։ Ետքը դարձաւ հարցուց հետը եղողներուն. Կ՚ուզէք որ Սելիմ թագաւորէ։ Ամէնքը մէկ բերան ըսին. Սելիմը կ՚ուզենք։ Մուստաֆան ալ ըսաւ ներքինապետին. Գնա ուրեմն բեր Սելիմը։

Երբոր ներքինապետը ներս դարձաւ, ու դռները գոցուեցան, կատղեցաւ Մուստաֆա փաշան ու պոռալով ըսաւ. Ինչու կը գոցէք դռները. ու սկսաւ երեսնին զարնել Սելիմին դէմ ըրած անիրաւութիւններին։ Բայց անիկայ դուրսը աս բաները խօսելու ատեն, ներսը սոսկալի խեղճ տեսարան մըն էր։ Թագաւորը չէր ուզեր մէյմը թագաւորելէն ետև իջնալ աթոռէն ու խայտառակ ըլլալ. իսկ Սելիմ որ ամենուն անպարտ ու անգէտ էր եղած բաներուն՝ յանկարծ եկաւ ներքինապետը, ու ժողովուրդը քեզ տեսնել կ՚ուզէ ըսելով բռնադատեց որ դուրս գայ. դուրսն ալ տասուերկու հոգի մեծերէն կը սպասէին. լացէն ելածին պէս՝ վրայ հասան, ու ներքինապետը դանակը սիրտը խոթեց. ետքը չարաչար տանջանքով խեղդեցին զինքը հոն։ Աս ընելէն ետև ներքինապետը դուրս ելաւ, ու ըսաւ Մուստաֆա փաշային որ Սելիմը հիւանդ է, դուրս չուզեր ելլել։ Ան ատենը Մուստաֆա փաշան կատղած՝ սպառնացաւ երդմունքով՝ որ եթէ բան մը ընէք Սելիմին, ամէնքնիդ ալ թրէ կ՚անցընեմ բաց 'ի սուլդան Մահմուտէն։ Մէյմը-

նաւնորդէն կամանց վայնատունը լամծին պէս՝ կրակ կտրեցաւ. դռները կոտրտեց, կայծակի պէս ներս մտաւ, հասաւ Մըրզ օտանին. ու երբոր քերքին ձգեցին առջին խեղճ Թագաւո-րին դլխակը կապերտի մը մէջ պլլած, ան կտրիճ մարդը սրտին ցաւէն կոխուններ յափշտակուած առիւծի մը պէս սկսաւ մռնչել, ու հրամմեց զամ մէնքը Թրէ անցընել: Նոյն միջոցին խեղճ սուլդան Մահմուտը շփոթած՝ իր դաստիարակին հետ առդիս անդին կը վազէր, վասն զի Սէլիմը սպան-նողները զինքն ալ կ՚ուզէին սպաննել. երբոր տե-սաւ զՄուստաֆա փաշան զէնքերովը՝ սարսափե-ցաւ, չճանչնալով զինքը. բայց անիկայ մէկէն ին-կաւ ոտքը պլլըլեցաւ, Ու ծառայ եմ, դուն իմ Թագաւորս ես՝ ըսելով: Իր հետը եղողներն ալ մէկէն սկսան կանչել. Կեցցէ Մահմուտ արքայ:

Իսկ սուլդան Մուստաֆա կարծելով որ իր պզտի եղբայրը Մահմուտն ալ սպաններցին, հրամ մեց մնացածներուն որ զէնք առնան՝ Մուստաֆա փաշային հետ ծեծկուելու: Բայց երբոր չէ-խիպլանը մտաւ ու ըսաւ՝ հրամմէ վանդակը, սուլ-դան Մահմուտը Թագաւորեց, յուսահատե-ցաւ. ու առջին տարին զինքը Չիմչիրլիկ: Հետե-ւալ օրը բոլոր մեծերն ու կարգացողները ժողվե-ցան պալատը, Մուստաֆա փաշան ալ իր զօր-քովը, ու առօք փառօք տարին Թաղեցին սուլ-դան Սէլիմին մարմինը Այէլի ճամբուն իր հօրը քովը:

Ասանկ մեռաւ խեղճը, արդար ու խաղաղասէր թագաւորը Սելիմ քառասուներեօթը տարեկան, տասնըութը տարի թագաւորելէն ետքը։ Օսմանցիք լացին՝ իրենց փառքը անոր հետը կորսընցընելով. ցաւեցան ուրիշ ազգերն ալ, բայց անոնցմէ աւելի իրեն հպատակ ազգերը, որոնք մինչև հիմայ գովելով կը յիշեն իր անունը։

Իսկ սուլթան Մահմուտ երախտագէտ ըլլալով Մուստաֆա փաշային, գլուխը վեզիր ըրաւ, և իշխանութիւն տուաւ իրեն որ անզգամներէն վրէժը առնէ։ Մուստաֆան ուզեց ենիչերիները վերցընել. լաւ կարգով կանոնով սկսաւ իր խորհուրդը գործադրել, բայց ետքը իր անզգուշութեանը զոհ եղաւ ենիչերիներուն։ Այն միջոցին յայտնուեցաւ սուլթան Մուստաֆային ենիչերիներուն հետ ունեցած համախոհութիւնը. և որովհետև կ'ուզէին անոնք սպաննել սուլթան Մահմուտը, ու նորէն գլուխը թագաւորեցընել, Մահմուտին քովի մեծերը իրենց շատ ատենէ 'ի վեր տուած խորհուրդը նորէն տալով իրեն՝ հրամանն առին, գնացին սպաննեցին վանդակին մէջ սուլթան Մուստաֆան։ Ետքը երբոր ենիչերիները հանդարտեցան, առին տարին Մուստաֆային մարմինը թաղեցին հօրը քովը։





# ՍՈՒԼԹԱՆ ՄԱՀՄՈՒՏ Բ.

ՄԵԾԱԳՈՐԾ, քաջ և անուանի թագաւորներէն մէկը եղաւ սուլդան Մահմուտ որ կրնանք ըսել թէ Օսմանեան տէրութիւնը կերպարանափոխ ըրաւ ու Եւրոպայի մէկալ տէրութեանց նմանցընել սկսաւ։ Քսանուերեք տարեկան երիտասարդ էր երբոր թագաւորեց 1808ին օգոստոսի 11ին. ու թուր կապած օրը կարգէ դուրս բան մը պատահեցաւ, որ շատերուն գուշակութեան պատճառ եղաւ, և ըրած գուշակութիւններն ալ սուտ չելաւ։ Պայրաքտար կամ Ալէմտար Մուսդաֆա փաշան որ ան ատեն վէզիր էր, 300 առնաւուտ զօրքով թուրն ալ զինուած՝ հանդիսին ներկայ ըլլալու եկաւ. աս բանս Տաճկաց օրինաց դէմ էր. վասն զի հասարակաց հանդէսներու մէջ ոչ ոք զինուած կրնայ ըլլալ։ Կ՚երեւնայ թէ Մուսդաֆա ատով իր

միտքը ուրիշներուն խմացընել կ՚ուզէր․ վասն զի կը փափաքէր որ իր զօրաց մէջն ալ եւրոպական կարգ ու կրթութիւն մտցընէ․ անոր համար առաջուց որոնց վրայ որ կասկած ունէր թէ աս բանիս պիտի հակառակին՝ սպաննեց․ ետքը ամէն տեղի մեծամեծաց թուղթ գրեց որ զան ժողվուին Կոստանդնուպօլիս տէրութեան կարօտութեանց վրայ խորհուրդ պիտի ընենք ըսելով։ Երբոր ժողվուեցան ամէնքը բաց ՚ի քանի մը փաշաներէն, յայտնեց անոնց թէ ինչ հարկաւոր բան է զօրաց մէջ կարգ կանոն հաստատելը․ և որովհետև աշխարհին մէջ մարդ չկար որ չգիտնար ենիչէրիներուն աներեսութիւնը ու անկարգութիւնները, ամէնքը միաբան անոր խորհուրդը հաստատեցին, Թագաւորին հրամանը ստորագրելով որոշեցին որ ենիչէրիներուն մէջէն ամենէն քաջերը ընտրուին, և քաղաքացւոցմէ ալ ով որ ուզէ եւրոպական կարգով կրթուելէն ետքը՝ Սէյմէն ըսուած զօրքին կարգը անցնի։

Խորհուրդը խիստ աղէկ առաջ գնաց, բայց Մուստաֆա գործադրութեան մէջ սխալեցաւ․ վասն զի փոխանակ ենիչէրիներուն գլխաւորներին ալ իր կողմը որսալու, բռնութեամբ անոնց գլուխը տաքցուց, ժողովրդեան վրայ ալ հարկերը ծանրացընելով՝ զանոնք ալ ոտք հանեց։ Ժողովուրդն ու ենիչէրիները ալ աւելի կատղեցան երբոր տեսան որ այն նոր հաստատուած զօրքը փոխանակ իրենց զինուորանոցները բնակելու,

սուլթան Սելիմի ատեն հաստատուած զօրքին տեղերը բռներ են ։ Բաց ասոնցմէ՝ դուրսի երկիրներուն մէկ քանի փաշաներն որ աս փոփոխութիւններուս դէմ էին, Մուստաֆային դէմ ունեցած ատելութիւնին յայտնելով, ապստամբեցան ։ ուստի Մուստաֆա ալ քովը եղած նոր զօրքերը վրանին խաւրեց ։ ու երբոր Գատըր կէճէսիին նախընթաց իրիկունը 200 հոգիով դէնպետը բարեւելու գացեր էր, դուրս ելլելու ատեն տեսաւ որ բոլոր հրապարակը մարդով լեցուեր է, ու իրեններուն հրաման տուաւ որ բռնութեամբ ժողովուրդը հալածեն ։ Աս բանիս վրայ ամենուն գլուխը տաքցաւ ։ ու ենիչերիներըը, կարդացողներն ու ռամիկը մէկ եղած յարձրկեցան Մուստաֆային պալատին վրայ, պահապաններըը ջարդեցին ու տանն ալ կրակ տուին ։ Աս ահագին շինուածքին բոցը մինչուան երկինք կը բարձրանար, ներսը եղողներուն վայնասունը ու դուրսիններուն աղաղակն ալ աշխարհք կը փլցընէր ։ Մուստաֆա տեսնելով որ ուրիշ ճար չկայ ու բոլոր պալատին եղողները կ'այրին կը մեռնին, հետը երկու հոգի առաւ և գոհարեղէնաց սընտուկը և քանի մը քսակ ոսկի ալ ուսը զարկած՝ փախաւ պահուըտեցաւ տանը պարտիզին մէջ եղած պզտի աշտարակին մէջ ։

Երկրորդ օրը կը կարծէին ենիչերիները թէ Մուստաֆան ալ պալատին մէջ անշուշտ այրած պիտի ըլլայ ։ բայց երբոր տեսան ան աշտարակը

որ դեռ ամբողջ անվնաս մնացեր էր, սկսան պատուհաններէն հրացաններ ներս թափել։ Մուստաֆա հետը եղած մարդիկներովը երկայն ատեն քաջութեամբ դէմ դնելէն երբոր ետքը տեսաւ որ ենիչերիք մեծ թնդանօթ մը կը բերեն, ինքն իր ձեռքովը ականը բռնկցուց, ու անանկով ահագին ձայթմունքով աշտարակը, պաշարողներն ու պաշարուողները ամէնն ալ օդը ելան, Մուստաֆա ալ փլատակին տակը թաղուեցաւ։

Այս խռովութեան ժամանակը շատ քաջութիւն ցցուցին Գատը ու Ռամիզ փաշաները. մանաւանդ Ռամիզ փաշան, որ երբոր եղածները լսեց մէկէն նոր զօրքն ու թնդանօթաձիգները միացուց, և անոնցմէ մէկ մասը բոլոր քաղաքին դըռները ղրկեց որ որչափ փախստական ենիչերի գըտնեն սպաննեն, մէկ մասն ալ պալատին պարիսպներուն վրայ դրաւ որ առտուընէ ինչուան իրիկուն կրակ կը թափէին ենիչերիներուն վրայ. ձայն ալ հանեց թէ Մուստաֆան կնկան զգեստով փախեր ազատեր է ու շատ զօրքով նորէն Պօլիս կուգայ. ասկէց զատ երկու ալ խոշոր նաւեր կայնեցուց ենիչերիներուն զօրավարին պալատին դիմացը, որ թնդանօթներով անդադար կը ծեծէին ան սոսկալի շէնքը։ Գատը փաշային զօրքն ալ բոլոր քաղաքը տարածուած՝ սոսկալի ջարդ կ՚ընէին, անանկ որ փողոցները մեռելներով լեցուեցաւ։ Բայց ետքը երբոր սկսան անոնք

յափշտակութեան ձեռք զարնել ու ցրուիլ ու ենիչերիները նորէն զօրացան ու զանոնք ինչուան Թագաւորական պալատը քշեցին, Նայա Մուֆթիային ձմերոցին ալ կրակ տալով այրեցին. ժողովուրդն ալ գրգռելով սկսան կանչել թէ մենք նորէն Մուստաֆան կ'ուզենք մեզի Թագաւոր։ Մեծամեծները խիստ տուին սուլթան Մահմուտին՝ որ եղբայրը Մուստաֆան սպաննել տայ. առջի բերան շատ դէմ կեցաւ Թագաւորը, բայց երբոր Թղթերը գտաւ իմացաւ որ աս խռովութեանց մեծ պատճառը Մուստաֆան է՝ հրամանն տուաւ որ սպաննեն զանիկայ։

Նոյն միջոցին երբոր ժողովուրդը Մուստաֆա Պայրաքտարին այրած պալատին մէջ ոսկի ործաթ փնտռելու հետ էր, աշտարակին վարի դին երկաթ դուռ մը գտան, բացին տեսան որ խուցի մը մէջ իրեք մեռել կային, անանց մէ մէկն էր Մուստաֆային, քովն ալ կեցած էին իրեն գոհարեղէններուն սնտուկը ու ոսկիի քսակները։ Ենիչերիներն որ ինչուան ան ատենը կարծէին թէ իրաւցընէ Ալէմդարը փախեր է, աս լսածնուն պէս աւելի սիրտ առին, ու ոտքէն չուան մը կապելով ինչուան Եթմէյտանին քշեցին տարին, և հինգ ժամ ոտքէն կախելէն ետև՝ Ետի գուլէէն դուրս փոսի մը մէջ նետեցին։ Ռամիզ փաշան աս բանս լսածին պէս Ռուսաստան փախաւ. Կատը փաշան ալ Իկոնիոն փախչելու ատեն ձեռք ընկաւ ու չարաչար

սպաննուեցաւ. ատանկով ան ահագին խռովութիւնը դադրեցաւ։

Երկրորդ օրը ուրբաթ ըլլալուն՝ Թագաւորը պէտք էր որ մզկիթ երթար. ուստի կանչեց ենիչէրիներուն զօրավարը, ու զօրքերին ըրած յանդգնութիւնն ու անօրէնութիւնը երեսին զարնելով, Ես աղէկ գիտեմ, ըսաւ, ձեր միտքը. Սելիմն ու Մուստաֆան սպաննել տուիք, հիմա կ'ուզէք զիս ալ սպաննել որ ուզածնիդ կատրենաք ընել. բայց աւելի աղէկ է որ ես իմ ձեռքովս մեռնիմ ու ժողովրդեանս դժբաղդութիւնը չտեսնեմ, ըսելով ձեռքը առաւ օշարակին գաւաթը, ձևացնելով թէ թոյն է։ Մէկէն վազեց զօրավարը ու գաւաթը ձեռքէն յափշտակելով գետին զարկաւ, ու ոտքը պագնելով թողութիւն ուզեց։ Թագաւորն ալ դարձաւ ըսաւ. Ես հիմա կ'ուզեմ մզկիթ երթալ, բայց թէ որ ճամբան գինեալ մը տեսնեմ՝ կը մեռնիմ։ Զօրավարը մէկէն դուրս ելաւ, ու սկսաւ մունետիկներուն կանչել տալ թէ Ռամիզ ու Գատար փաշաները բռնեցինք, ու Էթմէյտանին ցիցը պիտի հանենք. ով որ ենիչէրի է թող հոն ժողվուի։ Ասանկով ամէնքը հոն սկսան վազել. և Թագաւորը ելաւ մզկիթ գնաց ու առանց մէկը տեսնելու նորէն իր արքունիքը դարձաւ։ Անկեց ետև ենիչէրիներն առին թաղեցին Մուստաֆայի մարմինը իրեն հօրը քովը, ու Թագաւորէն ալ թողութիւն ուզեցին ըրածներնուն համար, ու հաւատարմու-

Թեւան երդմունքն ալ ըրին ։ Պենապետն ու կառավարիչներն ալ ուրախակցութիւն ընելու գացին Թագաւորին՝ այնպիսի խռովութենէ մը ազատելուն համար ։

Այս խռովութենէն ետքը Տաճիկները ուզեցին հաշտութիւն ընել Ռուսաց հետ, բայց պայմանները սաստիկ ըլլալուն՝ Օսմանցիք յանձն չառին, ու նորէն պատերազմի պատրաստուեցան ։ Ռուսները մէկ կողմանէ առաջ կուգային, ու 1809ին Սիլիստրէն առնելով Փէհլիվան փաշան ալ գերի տարին, ու Ռուշչուքի մօտ վէզիրին մեծ բանակն ալ պաշարեցին ։ Ամէնքը յուսահատեր էին և ընելիքնին չէին գիտեր, մանաւանդ որ նոյն տարին ուտելիքի կարօտութիւն կար, ու Պէյօղլու ալ մեծ կրակ ըլլալով՝ երկու հազար տունէն աւելի այրեր էին ։ Սիւլթան Մահմուտ ամենեւին չվհատելով՝ նորէն զօրք ժողվեց, ու խոստացաւ որ ինքն ըլլայ անոնց զօրավարը. բայց ետքը դենպետին ու մեծամեծաց խորհրդովը ետ կեցաւ ։ Այս զօրքերը շատ անգամ զարնուեցան ու ջարդուեցան. ուստի վէզիրն ալ, որ էր Ահմէտ փաշան, ուզեց հաշտութիւն ընել ։ Ռուսներն ալ տեսնելով որ Նափոլէոն վրանին կուգայ, իրենց պահանջմունքներէն ետ կեցան, ու 1812ին Պուքրէշի մէջ հաշտութիւն եղաւ, թէպէտ և աս բանս սուլթան Մահմուտի կամքը հակառակ էր ։ Նոյն օրերը Նափոլէոն ալ Անտրէոսսի զօրավարը Պոլիս դեսպան ղրկեց,

որուն շատ մեծ պատիւ ցցուց Թագաւորն ու Գաղղիացւոց հետ ունեցած բարեկամութիւնը նորոգեց։ Այն տարին Պօլիս, Զմիւռնիա ու Սելանիկ սաստիկ ժանտամահ եղաւ ու յիսուն հազարէն աւելի մարդ մեռաւ։

Իր խռովութիւններէն ու պատերազմներէն ետև սուլթան Մահմուտ նորէն սկսաւ իր ժողովրդեան երջանկութեանը հոգ տանիլ։ Շատ անգամ ծպտեալ կ'ելլէր կը պտըտէր, որպէս զի ժողովրդեան պիտոյքն ու տրտունջներն իմանայ, և քանի մը հրաման մը չէր տար ինչուան որ ինքն առաջ աղէկ մը չքններ ու չիմանար, և գիտնալով ալ իր ժողովրդեան անհանդարտ ու ըմբոստ բնաւորութիւնը, օրինաց պզտի զանցառութիւնն ալ սաստիկ կը պատժէր։ Թէպէտ և ինքը այսչափ արթնութեամբ իր տէրութեան հոգ կը տանէր, բայց Հալէթ անունով իր խարդախ ու չարագործ պաշտօնեայէն մեծապէս խաբուեցաւ, և անոր խօսքին հաւատալով՝ թէ տէրութեան և թէ մեր ազգին ալ շատ վնաս հասցուց։ Մեծամեծ ու արդարասէր մարդկանց սխալմունքը չէ թէ միայն կը յորդորէ զմեզ որ անմեղադիր ու ցաւակից ըլլանք իրենց, հապա նաև կը խրատէ թէ մարդ որչափ ալ արդարասէր ըլլայ ու արթուն, յանկարծական կիրքն ու չար մարդկանց խօսքին ականջ կախելը մեծամեծ փորձանքներու ու վըտանգներու մէջ մարդս կրնան ձգել։ Իսկ ընդհակառակն երբոր չար մարդկանց վերջի դըժ-

բաղդութիւնը կը տեսնենք՝ կ'իմանանք թէ աշխարհքիս մէջ չարութիւնն ու անօրէնութիւնը առանց պատժոյ չեն մնար, և վերջապէս ինքն ալ ուրիշի համար փորած փոսին մէջ կ'իյնայ կը կորսուի. ինչպէս որ Հալէթին ալ եղաւ. որուն պատմութիւնը թէ որ հոս մեր նպատակէն դուրս չըլլար ու տեղն 'ի տեղը պատմէինք, իր չարաչար կատարածովը աղէկ օրինակ մը կ'ըլլար ըսածներուս:

1814ին երբոր Գաղղիացիք Գերմանիայի մէջ յաղթուելով Յոնիական կղզիները թողուցին քաշուեցան ու Անգղիացիք զանոնք իրենց պաշտպանութեան տակը առին, սուլթան Մահմուտ ամենևին դէմ չկեցաւ, հապա աւելի աղէկ սեպեց իր տէրութիւնը բարեկարգելը: Ասոր համար հրաման հանեց որ ամէն գունդէն յիսուն հոգի զատուին ու մասնաւոր կրթութիւն ընեն պատերազմի, խոստանալով որ անոնց ռոճիկն ալ կ'աւելցընէ: Այս բանէս յորդորուած շատ ենիչերիներ ինքնիրենմնին գացին գրուեցան. և կամաց կամաց եւրոպական խաստութեանց սկսան վարժիլ. ասանկով քաղաքն ալ հանդարտեցաւ: Բայց ան իրեք տարին սոսկալի ժամանակ եղաւ, ու շատ մարդ ջարդեց. իսկ պատահած կրակներուն համբանքը չկար. կ'ըսեն թէ երկու տարուան մէջ, այսինքն 1816էն ինչուան 1817, Պօլսոյ մէջ հարիւր անգամ կրակ եղեր է. մէկ անգամ մըն ալ Պէշիկթաշի պալատը այրելով, Թագաւորին եր-

կու տարուան աղջիկն ու անոր դայեակն ալ հոն տեղը մեռան ։ Աս բանիս համար վէզիրը հրաման հանեց որ գիշերները առանց լապտերի մարդ դուրս չելլէ, ենիչէրիներուն զօրավարներէն մէկքանին ալ քշել տուաւ, ու շատերն ալ սպաննեց, որովհետեւ աս դժբաղդութեան պատճառը իրենք էին ։

Նոյն առենները Եանեայի Տէփէտէլէնլի Ալի փաշան գլուխ քաշեց Օսմանցուոցմէ, ու Տէփէտէլէնի մեծամեծները ջարդելով ունեցածնին յափշտակեց ։ Անկեց Գորմոլոյ աւանն ալ անցաւ, ու զամէնքը թրէ անցուց. եւ մէկն ալ իր մօրը նախատինք մը ըներուն համար՝ շամփուրի զարկաւ, ու կրակի վրայ խորվեց ։ Եանեայի մէջ ալ բերդ մը շինելով, բոլոր իր յափշտակած մեծութիւնը հոն տեղը հաւաքեց. Գաղղիա ու Անգղիա ալ դեսպան ղրկելով, շատ զէնք ծախու առաւ անոնցմէ ։ Երբոր լսեց թէ թագաւորն ալ հրաման տուեր է որ պատերազմ բացուի իրեն դէմ, բոլոր Յոյները որ արդէն պատրաստուեր էին ապստամբելու՝ ոտք հանեց. մանաւանդ որ սա առենները Մոլտաւիոյ ու Վլախիոյ իշխանները յորդորելով բոլոր Պեղոպոնէս ու քանի մը կղզիները ապստամբեցուցին ։ Հալէթ որ աս բանիս մէջ ալ ձեռք ունէր, ինքզինքը արդարացընելու ու Յոյները աւելի կատղեցընելու համար՝ անոնց Գրիգորիոս պատրիարքը, Եփեսոսի մետրապօլիտը եւ ուրիշ երկու ե-

պիսկոպոսներ մէկտեղ կախել տուաւ. ազգին երեւելի իշխաններէն շատն ալ, ու Էտիրնէի Կիւրեղ մետրապօլիտն ալ սպաննեց: Աս բաներս Յոյները աւելի կատղեցուց, և բոլոր Մորակղզին, Մակեդոնիան ու Փոքր Ասիան խռովութեամբ ու արիւնհեղութեամբ լցուեցաւ: Ռուսաց դեսպանին ալ խօսքը բանի չեկաւ, մինչև որ Յունաց կողմը կը բռնէր. ուստի ինքն ալ Պէյօղլուէն ելաւ Պետերբուրգ քաշուեցաւ: Տաճկըները շատ զօրքով մտան ապստամբաց երկիրը ու մեծ ջարդ տուին անոնց, որովհետև Յունաց զօրավարներուն մէջ ալ անմիաբանութիւն մտեր էր: Նաև ասկէց Կիպրոսի, Սելանիկի ու Զմիւռնիոյ մէջ ալ անհամար անմեղ մարդիկ սպաննեցին:

Այս միջոցին Ալի փաշան քիչ մը արգելք էր իրենց Յունաց դէմ կռուելին, բայց երբոր ամրոցի մը մէջ պաշարուած, վերջին քաջութեամբ շատ զօրք ջարդելէն ետև ինքն ալ ընկաւ մեռաւ, ան ատենը Օսմանցիք բոլոր ուժերնին դարձուցին Յունաց վրայ ու 1822ին առին Քիոս կղզին կամ Սագըզ ատասին, ու այնպէս անխնայ ջարդեցին ու գերեցին որ 100,000 բնակչէն 20,000 միայն մնացին, բայց Յոյները ծովու վրայ շատ մեծ քաջութիւն ցըցուցին, Օսմանեանց ծովակալին նաւը այրեցին ու նաւատորմիղն ալ ցիրուցան ըրին: Ասկէց ետև թագաւորը հրաման հանեց որ տասնըհինգ տա-

րուընէ ինչուան յիսուն տարուան մարդիկ զէնք առնեն. ասանկով ցամաքով Յունաց հետ զարնուեցան, ու Միսոլունկի բերդը անոնց ձեռքէն առին, Իփսարա կղզիին բնակիչքն ալ Թրքէ անցուցին: Միսոլունկիին առնուիլը Թէպէտ և շատ ուրախութիւն եղաւ քաղաքացւոց, բայց սուլթան Մահմուտ տեսնելով որ ենիչէրիներուն աներես լրբութիւնն ու անկարգութիւնը օրէ օր կ'աւելնայ՝ շատ չուրախացաւ եղած յաղթութեանը վրայ, և աւելի մեծ գործողութեան մը ձեռք զարկաւ, որ էր ենիչէրիները ջնջել: Այս գործողութիւնս ալ Թէպէտ աս միջոցին կ'ըլլայ, բայց մենք Յունաց ապստամբութեանը պատմութիւնը չկտրելու համար ետքը պիտի պատմենք:

Միսոլունկիին առնուելէն ետև Յունաց զօրավարները տեսնելով որ Օսմանցիք սոսկալի ջարդով առաջ կ'երթան, Անգղիացւոցմէ օգնութիւն ուզեցին: Աս առենը իրեք երևելի տէրութեանց դեսպանները՝ այսինքն Անգղիացին, Գաղղիացին ու Ռուսը սուլթան Մահմուտին առաջարկեցին որ Յունաց ազատութիւն տայ. բայց երբոր անիկայ իր միտքը չփոխեց, նոյն տէրութիւնները իրենց նաւերը ծով Թափեցին ու եկան Նաւարինոյին ծոցը մտան, ուր էր նաև Օսմանեանց նաւատորմիղը: Չգիտցուիր ինչ պատճառաւ խառվութիւն մը ինկաւ մէջերնին, ու սկսան իրարու վրայ կրակ Թափել. սոսկալի էր ան պզտի ծոցին մէջ եղած պատերազմը, նա-

ւերուն իրարու զարնուիլն ու վառօդարանին բռըն-
կելով երկինք ելլելը չըսուելու ու չտեսնուելու
բան մըն էր, և միայն բռընկած նաւերուն ծուխը
ան սոսկալի տեսարանը կը ծածկէր. վերջապէս
Օսմանեանց 60 մեծամեծ նաւերէն քանի հատ
պզտի նաւեր միայն խալըսեցան։ Երբոր աս լու-
րը Պօլիս հասաւ, մեծամեծները տակնուվրայ
եղան. իսկ սուլթան Մահմուտ չէ թէ միայն եւ-
րոպական դեսպաններուն մտիկ չըրաւ՝ որ Յոյ-
ները ազատէ կ՚ըսէին, հապա նաև Ռուսաց դէմ
պատերազմ բանալու հրաման տուաւ. Յոյնք
երբոր լսեցին աս բանս, աւելի սիրտ առին. թէ-
պէտ և սուլթան Մահմուտ խոստացեր էր անոնց
ըրածին ներելու, թէ որ նորէն հնազանդէին։
Բայց վերջապէս Ռուսաց պատերազմէն ետքը
եղած հաշտութեան մէջ որոշուեցաւ որ Յունաց
ալ ազատութիւն տրուի, ու զատ թագաւորու-
թիւն ըլլան. բայց անոնց սահմաններուն ու
Օսմանցւոց անոնց վրայ ունենալու իշխանու-
թեանը վրայօք որոշ բան մը չվճռեցաւ. ու այս-
պէս 1820ին սկսած պատերազմը 1829ին լը-
մընցաւ։

Սուլթան Մահմուտ աղէկ գիտէր թէ տէրու-
թեան մը յառաջադիմութեան ու հաստատու-
թեան գլխաւոր պատճառներէն մէկն ալ կանոնա-
ւոր կրթեալ զօրք ունենալն է. բայց գիտէր ալ
որ ասանկ մեծ գործողութեան մը մէջ ամենէն
հարկաւոր բանն ալ խոհեմութիւնն ու արիու-

թիւնն է։ Մինչ համար նախ ենիչերիներուն զօրավարացը սիրտը շահելով, անոնց ալ իմացուց աս բանին հարկաւորութիւնը, և իրենցմէ գիր ալ առաւ՝ որ աս բանին իրենք ալ օգնական ըլլան։ Ետքը վէզիրը խորհուրդ ընելով՝ կարդաց նաև Թագաւորին հրովարտակը, ու նոր զօրքին դրուելու կարգն ու կանոնը, ու դենպետը և ենիչերիներուն զօրավարները հաստատեցին ու կնքեցին ու ղրկեցին որ ենիչերի սպայից առջևն ալ կարդան։ Երբոր անոնք ալ յանձն առին աս բանս, ան ատեն մէկէն 5000 հոգի ընտրուեցան, ու անոնց նոր զգեստ ու զէնք բաժնեցին, ու նոր գունդ մը ձևացան Աշքընձի անունով։ Ենիչերիներուն սպայներէն ու զօրագլուխներէն ոմանք թէպէտ և դրսանց հաւանութիւն ցուցընելով ստորագրեր էին Թագաւորին հրովարտակին, բայց սրտով աս նորութեան թշնամի ըլլալով, մէկը մէկալը գրգռեցին որ աս բանս արգիլեն. և վերջապէս 1826ին յունիսի 15ին ելան ապստամբները իրենց տեղերէն, ու իրենց կաթսաներովը Աթմէյտանին լցուեցան. զինագործներուն կատսաներն ալ յափշտակեցին, ու զանոնք ալ իրենց հետ միացուցին։ Իրենցմէ մէկ մասը ելան գացին զօրավարին տունը՝ որ սպաննեն զինքը. բայց անիկայ տունը չգտնուելուն, տունը թալլեցին ու կրակ տուին։ Մէկ մասն ալ գնացին վէզիրին պալատը կողոպտեցին, ուրիշներն ալ փողոցներուն ու հրապարակներուն մէջ կը պօ-

ռայլին. Մեռնի դենապետը, մեռնին կարդացող-
ները. ու անոնց կանայքը, տղաքն ու ստացուած-
քը յափշտակուին, կրպակները բացուին ու վա-
ճառականները ամենևին վախ չունենան. Թէ որ
տապակիի կտոր մը գողցուի՝ աղանձոց կը հատու-
ցանենք տեղը, Թէ որ մէկը զրկում մը ընէ՝ պա-
տառ պատառ կ'ընենք զանիկայ։ Աս բաներուս
բոլոր քաղաքը տակնուվրայ եղեր էր, վէզիրն ալ
որ Պէօյիւքտերէ էր, աս բանս լսելով մէկէն հա-
սաւ Ալայ քէօշքին ըսուած տեղը, ուր տեղ ժող-
վուեր էին մեծամեծները, ուստի գանձապետն
ալ Թագաւորին ղրկեցին՝ որ նուիրական դրօշը
տանէ ու զօրքին երևնայ։ Վէզիրն ելաւ Ասլան-
խանէ ըսուած տեղը գնաց, հոն հասաւ նաև Թըն-
դանօթաճիգ զօրաց գլուխը, որ Պարաճէհէննէմ
կ'ըսուէր։ Թագաւորն ալ մէկէն Պէշիկթաշէն
իջաւ եկաւ Թոփգափու. և դրօշը հանելով վէզի-
րին ձեռքը յանձնեց, և մէկէն ամէն տեղ սկսան
կանչել Թէ Ով որ ճշմարիտ մահմէտական է՝
Մահմէտին դրօշին ետևէն երթայ։ Ասով քիչ ա-
տենուան մէջ անհամար մարդիկ ժողվուեցան, և
ամէնուն ալ զէնք բաժնուեցաւ. ու Ալլա՛հ ալլահ,
ալլահ էքպէր կանչելով ելան գացին սուլթան Ահ-
մէտի մզկիթը։ Հոն խորհուրդ ընելով իրենցմէ
շատը վազեցին գացին ապստամբներուն վրայ։
Իսկ ենիչէրիները երբոր լսեցին Թէ դրօշը դուրս
հաներ են, և Թէ ժողովուրդը յորձանքի պէս
Աթմէյտանի կը վազէն, վախնալով փախան Էթ-

մէյտանի որ իրենց գլխաւոր ապաստանարանն էր, ու Հրապարակին մեծ դուռն ալ գոցելով ետեւը քարեր դիզեցին : Ժողովուրդն ու զօրքն ալ սկսան դէպ 'ի հոն վազել, ու բոլոր Հրապարակն ու ձմերոցը պաշարեցին . Պարաճէհէննէմն ալ նորէն յիշեցուց ապստամբներուն իրենց պարտքը, ու ըսաւ ալ որ եթէ հնազանդելու ըլլան՝ թագաւորը իրենց կըներէ : Բայց երբոր անոնք մտիկ չըրին, հրամմեց որ թնդանօթները առաջ քաշեն . Նոյն ատենը բոլոր ապստամբները Հրապարակին դրան ետեւը դիզուեր էին, թնդանօթին մէկը նետուելուն պէս՝ գնաց դրան մէկ փեղկը կոտրեց, ու հազարաւոր մարդիկ մէկ տեղ մեռցուց : Մէկէն զինուորներէն մէկը ցատքեց մէկալ դուռն ալ բացաւ, ու բոլոր ժողովուրդը հրապարակը թափեցաւ . Պարաճէհէննէմին ոտքը թէպէտ հրացանի գնտակէ մը վիրաւորեր էր, բայց ինքը դարձեալ սուրը ձեռքը՝ ամենուն սիրտ կուտար : Ենիչերիներն ալ փախան ապաւինեցան իրենց ձմերոցները, ու Հրապարակին մէջի Թէքքէ ըսուած տեղը : Ան միջոցին տասուերկու թնդանօթներէն ընկած գնտակները ձմերոցը չորս դիէն բռնկցուցին, ու քիչ ատենուան մէջ ան սոսկալի շէնքը մէջի եղած բիւրաւոր մարդիկներովը մոխիր դարձաւ : Մէկէն սուլդան Մահմուտի մզկիթը մարդ ղրկեցին որ վեզիրին ու թագաւորին աւետիս տայ եղած յաղթութեանը համար :

Ասանկով ենիչերիներուն մեծ մասը հոն տեղը կոտորուեցան. իսկ բռնուածներն ալ հրամեց վե-զիրը որ բանտը դնեն, որպէս զի վրանին քննու-թիւն ըլլայ։ Ասանկ բռնուեցաւ նաև ենիչերի-ներուն զօրագլուխը Ճէլալէտտին Մէհէմմէտ ա-ղան. մէկէն 'ի մէկ գունդ գունդ զօրքեր ղրկուե-ցան քաղաքին ամէն մէկ դռներուն, ու ամէն տե-ղի բնակիչներուն ալ հրաման եղաւ՝ որ իրենց թաղին ու փողոցին պահպանութիւն ընեն։ Այն գիշերը վեզիրը, դենպետը ու ուրիշ մեծամե-ծները սուլթան Ահմէտի մզկիթը անցուցին. իսկ երկրորդ օրը վեզիրը մէկիկ մէկիկ բռնուած զօ-րագլուխներն ու սպաները դահիճը կանչեց, ու անոնց անհաւատարմութիւնը երեսնին զարնելով՝ զամէնքն ալ խեղդել տուաւ։ Այն գիշերը թագա-ւորական կնքով հրովարտակ մըն ալ ելաւ, որուն մէջ կը ծանուցանէին ենիչերիներուն վերնալուն պատճառը ու նոր զօրքին հաստատուիլը, որ Մուալլէմ ասաքիրի մանսուրէի մուհամմէտիյէ պիտի կոչուէին։ Երրորդ օրը նուիրական դրօշը վերցուցին ու մեծ հանդիսով նորէն պալատը դարձուցին. Թագաւորն ալ ատենաբանութիւն մը ըրաւ նախ փառք տալով Աստուծոյ և ետքը գովելով մեծամեծները՝ որ այսպիսի մեծ գործո-ղութեան մը օգնական եղան իրեն. ու ամէն մէ-կուն պաշտօններ ու պատիւներ բաժնելով, ա-ռաջարկեց իրենց տէրութեան քանի մը պիտոյի-ցը վրայօք խորհուրդ ընելու։ Այն խորհրդով

որոշուեցաւ որ քաղաքին մէջ եղած դրսեցիներ-
ըը որ Ենիչէրիներուն օգնական եղեր էին, բո-
լորն ալ իրենց երկիրը դառնան. Պէկթաշի ը-
սուած տէրվիշներուն կարգը ջնջեցին ու անոնց
վանքերն ու գերեզմանները աւրեցին. Նմանա-
պէս Սիփահի, Իւլիւֆէճի ու Ղուրէպա ըսուած
ձիաւոր զօրքը վերցուցին. Եւ ուրիշ զինուորաց
գունդերուն անունը, զգեստն ու սովորութիւննե-
րը վերցուցին, ու եւրոպական զգեստ ու կրթու-
թիւն մտցուցին։ Շատ անգամ Սուլթան Մահ-
մուտ ալ անոնց կրթութեան ատենը կուգար զի-
րենք քաջալերելու ու սիրտ տալու. Նաեւ զինուո-
րութեան ու բժշկութեան դպրոց, զէնքի գոր-
ծարաններ ու մեծաշէն ձմերոցներ հաստատեց։

Նոյն ատենները Պահճէ գափուսու մեծ կրակ
մը եղաւ, որ քաղաքին ութերորդ մասը ու Պէ-
զէսթէնն ալ այրեց, ու գրեթէ 300,000,000 դու-
րուշի վնաս ըրաւ։ Սուլթան Մահմուտ հրամեց
որ արքունեաց դռներն ու ուրիշ պալատները բա-
ցուին՝ որ խեղճերը հոն ապաւինին. Ետքը շատ
մը ստակ ալ տուաւ՝ որ վնասուածոցը նորէն շի-
նեն։ Նա որպէս զի կրակին պատճառովը խռո-
վութիւն մը չելլէ, նոր զօրքը ասդիս անդին
ցրուեց, ու ով որ քաղաքական տեսչութեան
վրայ տրտունջ ընէր, գլխատել կուտար։ Շատ
կնիկներ ալ նոյն պատճառի համար պարկերու
մէջ կարել ու ծով նետել տուաւ։ Քիչ ատե-
նէն Պէյօղլու ալ մեծ կրակ ըլլալով 10,000 տուն

պըրեց․ բայց անկէց ժանտամահէ ու քոլերայէ ալ շատ մարդիկ մեռան։ Այս ամէն Թշուառութեանց մէջ սուլդան Մահմուտ իր սրտին արիութիւնը ամենեւին չթողուց․ ափսոս որ իր քաջութեանը համեմատ չէր ոչ տէրութեանը ուժը և ոչ ալ պաշտօնէից քաջութիւնը․ անոր համար Թէպէտ կործութեամբ Ռուսաց դէմ նորէն պատերազմ բացաւ՝ բայց Ռուսները զօրացան ու մինչև Կէլիպօլու ու Պիւյիւք Չէքմէճէ եկան․ քիչ մնաց որ մայրաքաղաքն ալ պիտոր մտնէին․ ուստի պէտք եղաւ ու հաշտութիւն ընել։ Եգիպտոսի Մէհէմմէտ Ալի փաշային հետ ալ պատերազմի եղաւ, բայց չկրցաւ նուաճել․ ուստի Եգիպտոս զատ տէրութիւն մը ձևացաւ Թէպէտ և հարկատու Օսմանցւոց։ Ասոնցմով իմացաւ սուլդան Մահմուտ որ տէրութեանը ներքին ուժը աւելցնելու է․ անոր համար իր երկրին մէջ զանազան դպրոցներ հաստատելէն ետև, Փարիզ ու Վիեննա ալ ընտիր տղաքներ ղըրկեց որ երթան զինուորութիւն, գիտութիւն, ու քաղաքականութիւն սորվին, ու 1830ին Պօլսոյ մէջ ալ լրագիր մը հրատարակել տալ սկսաւ տաճկերէն ու գաղղիերէն։

Այսկէ զատ՝ Եւրոպայի երևելի մայրաքաղաքներուն ալ դեսպաններ հաստատեց, Մուսդաֆա Ռէշիտ փաշան Փարիզ ղըրկելով, Ֆէթհի Ահմէտ փաշան Վիեննա, Մէհէմմէտ Քեամիլ փաշան Պէռլին, և ուրիշներն ալ Լոնտրա ու Փե-

Թրպուրկ ։ Մէկ կողմանէ ալ ժանտախտին տարուէ տարի ըրած ջարդին առջևը առնելու համար Ճարտարութեամբ համոզեց մեծերը ու 1838ին հրամմեց որ արգելանոցներ շինուին, ու եկող գացողին զգուշութիւն ըլլայ ։ Եւրոպական տէրութեանց դեսպաններուն ալ արգիլեց որ իրենց հպատակաց ձեռքը հրամաններ չըտան ․ վասն զի շատ անկարգութիւններու պատճառ կ'ըլլար աս բանս ։ Ուրիշ ատեննէն ատեան մըն ալ սահմանեց, որոնց պաշտօնն էր արուեստները, վաճառականութիւնն ու երկրագործութիւնը ծաղկեցընել ․ Պէյօղլու ալ վերծանութեան Թանգարան մը հաստատեց՝ Եւրոպայի ամէն տեսակ լրագիրներն ու օրագիրները հոն տեղը շատցընելով ։

Ասանկ Թագաւոր մը պէտք էր որ դեռ շատ ապրէր, բայց Եգիպտոսի պատերազմը դեռ չըլմընցած՝ սուլթան Մահմուտ անյայտ հիւանդութեամբ օր օրուան վրայ կը հիւծէր, և կ'ըսեն թէ աս հիւանդութեանս պատճառը և ոչ իր սիրելիներուն իմացուցեր էր ։ Աստի 1839ին յուլիսի առջի օրը Ջամլըճա իր քէօշքը տունը գացած ըլլալով, հոն տեղը առաւօտեան դէմ մեռաւ ․ և կէսօրուան մօտ մունետիկներէն ու Թնդանօթներուն ձայնէն իմացուեցաւ Թագաւորին մեռնիլը ։ Մէկէն 'ի մէկ Խոսրով փաշան Խալիլ ու Սայիտ փաշաներուն հետ գնաց անդրանկին իմացընելու, ու հրաւիրեց որ գայ նըս-

տի իր հօրը աթոռը։ Երբոր Սուլթան Մէճիտ լսեց աս բանս՝ սկսաւ լալ ու ողբալ, ու վերջապէս ելաւ եկաւ բուն արքունիքը։ Նոյն միջոցին Թագաւորին մարմինն ալ ուրիշ դռնէ մը բերին դրին Արզ օտասը ըսուած սրահը․ հոն տեղը նորէն ողբաց ու աղօթեց իր հօրը մարմնոյն վրայ․ ետքը գնաց նստաւ Թագաւորական գահը, ու ամէն մեծերն ալ ընկան երկրպագութիւն ըրին։

Երեկուան դէմ Թաղման հանդէսը կատարուեցաւ․ անհամար մարդիկ բոլոր փողոցները լցուած հանդէսը տեսնելու եկեր էին․ բայց այսու ամենայնիւ այնչափ բազմութեան մէջ ամենեւին խռովութիւն մը չեղաւ։ Ամենէն առջեւէն կ՚երթային պաշտօնատէրները ու Թագաւորին ներքին խորհրդականները, անոնցմէ ետեւ Խոսրով փաշան ու ուրիշ մեծամեծները։ Անոնց ետեւէն ալ Թագաւորին դագաղը ծանրագին ծածկոցով մը միայն գոցուած, ու գլխուն կողմն ականակուռ ձեղանակով զարդարուած ֆէսը։ Շատ սպասներ ալ ձիերու վրայ նստած վեր վար ժուռ կուգային, ու ժողովրդեան ստակ կը ցրուէին։ Ասանկով տարին զետեղեցին Թագաւորին մարմինը Փաշլը փաշա ըսուած տեղը, ուր որ ետքը փառաւոր շիրիմ մը կանգնել տուաւ որդին Սուլթան Մէճիտ։





# ՓՈԽԱՐՔԱՅՔ

ԿԱՄ

# ՎԵԶԻՐՔ ՕՍՄԱՆԵԱՆՑ

ԱՆՈՒԱՆՔ



## ԱԼԱՅԷՏՏԻՆ ՓԱՇԱ

Տէրութեան նոր սկսած ժամանակը անոր ապագայ յառաջադիմութեանը մեծ պատճառ կ'ըլլան խոհեմ ու քաղաքագէտ մարդիկ։ Այսպիսի անուանի իշխանաց մէկն է Ալայէտտին փաշան Օսմանեան տէրութեան սկզբնաւորութեան ատենը։

Սուլթան Օսմանին մեծ որդին էր Ալայէտտին. և որովհետև Թուրքաց մէջ սովորութիւն էր որ մեծ որդւոց փաշա կ'ըսէին պատուոյ համար, ինչպէս նաև ինչուան հիմա իրենցմէ ոմանք մեծ եղբօրը աղա կ'ըսեն, ասկէ ոչ միայն Ալայէտտին փաշա ըսուեցաւ, հապա նաև իր յաջորդները,

և ինչուան ուրիշ մեծ իշխաններն ալ փաշա կ'ըսուին :

Ալայէտտին փաշան իր հօրը տէրութեան ըսկիզբները շատ կարգութիւններ ըրաւ, և հպատակները աղէկ գիտնալով իր խոհեմ ու արդարասէր և միանգամայն գթասիրտ բնաւորութիւնը, իրենց ամէն պիտոյիցը համար համարձակ իրեն կը դիմէին, թէպէտ և ինքը փոխարքայ կամ վէզիր անունը և պաշտօնը չէր առած : Եւ թէ որ շատ աւելի գովելու արժանի է այն մարդն որ առանց պաշտօնին պատուանունը ունենալու՝ անոր պարտքերը գովելի կերպով կը կատարէ, քան թէ անիկայ որ պաշտօնին ու պատուոյն պահանջած գործողութիւնները անհոգութեամբ կ'ընէ, Ալայէտտին փաշան իրաւամբ պէտք է միշտ վեր սեպուի իր յաջորդներուն շատէն, և ուրիշ նման պաշտօն ունեցող իշխաններէն :

Երբոր սուլթան Օսմանին տեղը թագաւորեց անոր պզտիկ որդին սուլթան Օրխան, Ալայէտտին փաշան թերևս զգուշանալով որ կասկած մը չըլլայ թէ ինքը ետևէ էր հօրը յաջորդելու, ինքնակամ ձեռքը քաշեց տէրութեան գործողութիւններէն ու առանձնացաւ : Բայց սուլթան Օրխան երբոր իր հօրը տէրութիւնը աւելի ընդարձակեց ու Նիկոմիդիա քաղաքին ալ տիրեց, շատ աղաչանքով ստիպեց հաւանեցուց իր մեծ եղբայրն որ յանձն առնու իրեն օգնելու, և վէզիր անուանեց զինքը, որ Արաբացւոց բա-

ռով բեռնակիր կը նշանակէ, իբր թէ տէրու-թեան ծանր գործողութիւնները իր վրան առնող։

Ալայէտտին փաշան շատ տեսակ կարգադրու-թիւններ ըրաւ Օսմանեան տէրութեան մէջ. բայց գլխաւորները ասոնք են։ Ինչուան ան ատե-նը Օսմանցիք ալ Իկոնիոնի Սելճուգեան թա-գաւորաց ստակները կը բանեցընէին. Ալայէտ-տին որոշեց որ անկէց ետքը օսմանեան թագա-ւորաց անուանովը կոխուին ամէն տեսակ ստակ-ներ։ Ամէն վիճակի մարդկանց համար մասնա-ւոր հագուստ որոշեց. ձիաւոր ու հետեւակ զօրաց մէջ կարգեր դրաւ, ու քրիստոնեէից տղաքը ժող-վելով՝ նոր գունդ մը կազմելը ինքը հնարեց. աս գունդն է որ ան ատենէն ենիչէրի ըսուեցաւ, և ին-չուան վերջի ատեններս բոլոր աշխարհք դողա-ցուց. բայց ետքերը շատ անգամ՝ ապստամբու-թեան ու անգթութեան գործքեր ընելուն հա-մար՝ 1826ին բոլորովին ջնջուեցաւ օսմանեան տէրութենէն։

Իսկ Ալայէտտին փաշան իր ծերութեան ժա-մանակը յիշելով առանձնական կենաց հանգիստ հանդարտութիւնը, նորէն քաշուեցաւ Պրուսա քաղաքը ու հոն մեռաւ։

## ՃԵՆՏԵՐԵԼԻ ԳԱՐԱ ԽԱԼԻԼ ԽԱՅՐԵՏՏԻՆ ՓԱՇԱ

ՍՈՒԼԴԱՆ Օսմանին աներոջը Էտէպալի ծերունայն ազգական էր սա Գարա Խալիլը։ Իր ատենի կարդացողներուն մէջ անուանի ըլլալով Սուլդան Օրխան զինքը դատաւոր դրաւ Իզնիգ ու Պիլէճիկ քաղաքներուն, ետքն ալ Պրուսայի։

Օրխանին յաջորդը Սուլդան Մուրատ Ա., տեսնելով ատոր ոչ միայն քաջ օրէնսգէտ, հապա նաև խոհեմ խորհրդական ու կտրիճ զօրավար ըլլալը, առաջ գազիասքէր՝ այսինքն դատաւոր զօրաց անուանեց, ետքն ալ վէզիր ըրաւ, ու անունը դրաւ Խայրէտտին փաշա։

Տասնըութը տարի վէզիրութիւն ըրաւ ասիկայ, և օսմանեան տէրութեան օրինաւոր վէզիրներու առաջինը կը սեպուի։ Երբոր 1386ին Ենիշէհիր քաղաքը առնելու կ'երթար, ճամբան Ենիճէվրան ըսուած տեղը մեռաւ։

# ԻՊՐԱՀԻՄ ՓԱՇԱ

Թէպէտ Խայրէտտին փաշային ետքը անոր որդին Ալի փաշա տեղը անցաւ, բայց իր որդին (կամ ինչպէս ուրիշները կ'ըսեն՝ եղբայրը) Իպրահիմ փաշա աւելի լաւ անուն ձգեց իբրեւ գիտուն, խոհեմ ու կառավարութեան գիտցող մարդ։

Եըլտըրըմ Պայեզիտին ատենը ղատիասքեր ըլալէն ետքը, երբոր անոր որդին Մուսա չէլէպի յաղթեց իր Սիւլէյման եղբօրը, Իպրահիմ փաշա Մուսային օգնելէն ետքը՝ գնաց Պրուսա 1411ին, ու հոն սուլդան Մէհէմմէտ Ա. Թագաւորին հետ տեսնուելուն պէս՝ անոր վէզիրին եղաւ։

Աս վէզիրին մեծ գովեստը ան է որ սուլդան Մէհէմմէտին մեռնելէն ետքը Ադրիանէ քաղաքին մէջ ինչուան որ անոր որդին սուլդան Մուրատ Բ. եկաւ Ամասիայէն ու հօրը աթոռը նստաւ՝ Իպրահիմ փաշան կառավարեց խաղաղութեամբ տէրութիւնը, այնպէս որ նոր Թագաւորն ալ հաստատեց զինքը առջի պաշտօնին մէջ։

Իպրահիմ փաշան տասնըհինգ տարիէն աւելի վէզիրութիւն ընելէն ետքը, 1427ին մեռաւ։

## ԽԱԼԻԼ ՓԱՇԱ

Այս վէզիրը անով անուանի եղած է որ իր հօրը Խալիլ փաշային յաջորդելով, ոչ միայն քսանըչորս տարի այն դժուար պաշտօնը կատարեց, հապա Ֆաթիհ սուլթան Մէհէմմէտին պէս ահարկու Թագաւորին կրցաւ հաճոյանալ՝ գէթ առջի բերանը :

Բայց 1453ին, երբոր սուլթան Մէհէմմէտ Կոստանդնուպոլիսը Յունաց ձեռքէն առնելու կ'երթար, կասկած մը առաւ թէ Խալիլ փաշան կաշառք առեր է Յունաց կայսերէն. ուստի Կոստանդնուպոլսոյ առնուած օրը պաշտօնէն ձգեց ու բանտ դրաւ զինքը. քառասուն օրէն ետքն ալ սպաննեց : Անով վերջացաւ Չէնտէրէլի Կարա Խալիլին ցեղը, որմէ որդւոց որդի անուանի վէզիրներ եղեր էին. և աս Խալիլ փաշան եղաւ առաջինն որ Թագաւորական հրամանով սպաննուեցաւ :

## ԳԱՐԱՄԱՆԻ ՆԻՇԱՆՃԻ ՄԷՀԷՄՄԷՏ ՓԱՇԱ

ՕՍՄԱՆՑԻ վէզիրներուն մէջ քիչ մարդ եղած է ասոր պէս կարդացող ու հանճարեղ, և միանգամայն վեհանձն, խոնարհամիտ ու ազնուական։ Կ'ըսեն թէ ասիկայ Մոլլա Հիւնքեար կամ Մէվլանա Ջէլալէտտին Մէհէմմէտի ցեղէն կուգար, որ 1273ին մեռած կը սեպուի, ու Մէվլէվի ըսուած տէրվիշներուն հիմնադիրն է։

Մէհէմմէտ փաշան չորս տարիի չափ միայն ըրաւ վէզիրութիւնը. ու երբոր 1481ին Ֆաթիհ սուլդան Մէհէմմէտը Նիկոմիդէ հասած ատենը մեռաւ, ենիչէրիները ոտք ելան ու Նիշանճի Մէհէմմէտ փաշան սպաննեցին։

## ՆԱՍՈՒՀ ՓԱՇԱ

ՓԱՓԱՔԵԼԻ բան էր որ ամէն մեծամեծ մարդիկ իրենց աղէկութեամբը միայն անուանի ըլլային. բայց աս բանս կարծես թէ ամենուն չէ տրուած, և շատը իրենց պակասութիւններովն ալ անուն հաներ են՝ որպէս զի խելացի մարդիկ

անոնց չարութիւնները տեսնելով զզուշանան անոնց հետեւող ըլլալէն։ Նասուհ փաշան ալ շատ անուանի է Օսմանցւոց մէջ իր անգթութիւններովն ու փառասիրութեամբը։

Ասիկայ Կիւմիլճինէ աւանէն էր, ու պալթաճի ըսուած զօրաց մէջ մտնելէն ետքը չաւուշ եղաւ, ետքը Օխլէի վոյվոտա, անկէց ետքը Թագաւորական ախոռապետ, Հալէպու կուսակալ, Տիարպէքիրի կուսակալ, ետքն ալ Թագաւորին փեսայ ու վէզիր։ Աս ամէն պաշտօններուն մէջ ալ Նասուհ փաշան յայտնի երեւցաւ մէկ կողմանէ իր գործունեայ աչքաբացութիւնը, առատաձեռնութիւնը, և օրինաց տեղեակ ըլլալը, բայց միանգամայն նաև իր անյագ փառասիրութիւնը, ինքնահաւան ամբարտաւանութիւնը, անխիղճ խորամանկութիւնը, և բարկասիրտ ոխակալութիւնը։ Ասանցմով բոլոր օսմանեան տէրութեան մեծամեծ պաշտօնները հասաւ, ու մեծի պզտիկի ատելի եղաւ. անանկ որ սուլդան Ահմէտ իմանալով ասոր ըրածները, գլխատել տուաւ զինքը 1614ին։

## ԷԼՄԱՍ ՄԷՀԷՄՄԷՏ ՓԱՇԱ

ՍԻՆՈՊ քաղաքին Խօշալայ ըսուած գեղէն էր աս անուանի վէզիրը, որ թէ իր դրսի տեսքին համար և թէ մանաւանդ շատ բարոյական կատարելութիւններուն համար Էլմաս ըսուեցաւ։ Սուլթան Մէհէմմէտ Դ․ բերել տուաւ զինքը իր պալատը, ու տասնըեօթը տարուան մէջ այնչափ մեծցաւ որ ինչուան վէզիր եղաւ սուլթան Մուստաֆային օրերը, այսինքն 1694ին։ Նաև թէպէտ իրեք տարի միայն վէզիրութիւն ըրաւ, ու Դ․երմնացող դէմ բացուած պատերազմին մէջ ընկաւ մեռաւ 36 տարեկան, բայց ուրիշ շատ երկարակեաց վէզիրներէն անուանի եղաւ իր խոհեմ կառավարութեամբը։

## ՐԱՂԻՊ ՄԷՀԷՄՄԷՏ ՓԱՇԱ

ԸՍԿԷՑ հարիւր տարիի չափ առաջ թէ որ մէկ վէզիր մը կար որ հիմակուան հանճարեղ ու հայրենասէր վէզիրներուն համեմատի, աս Րաղիպ փաշան է։

Վէզիր ըլլալէն առաջ ալ ինչ պաշտօններու մէջ որ մտաւ՝ ամէնն ալ գովութեամբ կատա-

րեց։ Իսկ երբոր սուլդան Օսման Գ. զինքը վէ-զիր ըրաւ 1757ին, մանաւանդ երբոր անոր յա-ջորդը սուլդան Մուստաֆա Գ. հաստատեց զինքը նոյն պաշտօնին մէջ, Րաղըպ փաշան աւելի յայտ-նեց իր քաղաքականութիւնն ու հայրենասիրու-թիւնը։

Շատ օգտակար բարեկարգութիւններ ըրաւ Օսմանեան տէրութեան մէջ. և զարմանալին ան է որ այնպիսի ատեններ ետեւէ եղաւ որ Օս-մանեան երկրին մէջ քառասնօրեայ մաքրարան հաստատէ ժանտախտին դէմ. բայց իր աս փա-փաքը անկատար մնաց։

Իր արթուն ու սրամիտ հանճարը ասով ալ յայտնի է որ ոչ միայն իր ազգին մէջի կարդա-ցողներուն մէջ առաջին էր, այլ և գովելի հե-տաքրքրութեամբ մեծ սէր ունէր օտար ազգաց վրայ տեղեկութիւններ առնելու։ Չինաց պատ-մութիւն մը շարադրել տուաւ տաճկերէն, ինքն ալ զանազան բարոյական նիւթերու վրայ գիրք մը շարադրեց. ուրիշ գիրք մըն ալ խելացի խօս-քերու և ընտիր առածներու։ Գրատուն մըն ալ շինեց Կոստանդնուպոլսոյ մէջ շատ փառաւոր՝ Լալէլի ջէշմէին մօտ։

Րաղըպ փաշային կորած ճարտար ու արդար դատաստանները այնչափ անուանի են որ ինչուան հիմա Տաճկաց մէջ կը պատմուին։ Ինքը մեռաւ 1768ին, 66 տարեկան, և իր շինած գրատանը քով թաղուեցաւ։

Ինչպէս ճնշուած մեր օրերը եղան ուրիշ երևելի վէզիրներ ալ որ օսմանեան տէրութեան պատիւ ըրին. բայց ամենէն աւելի անմոռանալի յիշատակաց արժանի է հիմակուան մեծ վէզիրը Մուստաֆա Ռէշիտ փաշա, որուն կատարեալ և արժանի գովեստ իր խոհեմ ու բարակամիտ կառավարութեան գործքերն են՝ որ աս մեր համառօտ գրուածքէն շատ աւելի ճարտասանութեամբ կը խօսին մեր ժամանակակից մարդկանց հետ, ու մեզմէ ետքն ալ օսմանեան տէրութեան պատմութիւնը շարունակողներուն առատ ու փառաւոր նիւթ պիտի ըլլան շարադրելու։





# ԷԼՀԱՃ ՄՈՒՍԴԱՖԱ

# ՔԵՐԹԻՊ ՉԷԼԷՊԻ

## ՀԱՃԻ ԽԱԼԻՖԷ

ՕՍՄԱՆԵԱՆ գրականութեան եզական պարծանքն ու պատիւը արժանապէս աս բազմահմուտ մատենագիրն ըլլալով, իրեն և իր գրուածոցը վերայ համառօտ տեղեկութիւն մը տալը հոս հարկաւոր կը սեպենք։

Կոստանդնուպօլիս ծնած ու մեծցած ըլլալէն ետքը, իր սրամիտ աշխատութիւնն ու գովելի ուսումնասիրութիւնը քանի գնաց աւելցուց ճանապարհորդութիւններ ընելով, ասիական ու եւրոպական լեզուներ սորվելով, երևելի վարժապետներու աշակերտութիւն ընելով, և անհամար գրքեր կարդալով։ Իր վարքը գրողները կ'ըսեն թէ իրեք հարիւր տեսակ գիտութենէ աւելի կարդացեր է արաբերէն, պարսկերէն ու տաճկերէն գրքերու մէջ։ Գիտութիւն ըսելով ինչ ալ հասկընան անոնք, աս յայտնի է Հաճի Խալիֆէին ինչուան հիմա մնացած գրուածքներէն որ իրեն պէս բազմահմուտ մատենագիր չէ եղած

օսմանեան տէրութեան մէջ ։ Ինքը մեռաւ 1647ին . բայց իր աշխատանքները անմահացուցին իր անունը ոչ միայն Տաճկաստան, այլ և Եւրոպայի իմաստնոց մէջ որ անոր մէկ քանի գրուածքները իրենց լեզուներովը թարգմանեցին ու տպեցին ։

Քեաթիպ չէլէպիին գլխաւոր գրքերը ասոնք են .

Ա . ՔԷՇՖ-ՈՒԶ-ԶՈՒՆՈՒՆ, այսինքն Բացայայտութեան կարծեաց ։ Ասիկայ այբուբենական կարգով Մատենադարան մըն է գիտութեանց և արուեստից՝ արաբերէն . մէջը գրեթէ տասնըութը հազար արաբերէն, պարսկերէն ու տաճկերէն գրքերու անունը դնելէն ետև, անոնց հեղինակներուն ալ անունները ու վարքերը կը գրէ ։ Ասոր քանի մը ձեռագիր օրինակները կը գտնուին նաև Փարիզու ազգային գրատունը, և Համմէր գերմանացի արևելագէտը ասոր համառօտութիւնը հրատարակեց ։

Բ . ԹՈՒՀՖԷԹ-ՈՒԼ-ՔԻՊԱՐ, որ ըսել է Ընծայ մեծամեծաց ։ Ասիկայ Օսմանցւոց ծովական պատերազմներու պատմութիւնն է՝ Կոստանդնուպոլիս տպուած 1728ին ։

Գ . ԹՈՒՀՖԷԹ-ՈՒԼ-ԱԽԲԱՐ . Պատմական, փիլիսոփայական ու բանաստեղծական խրատներ են ։

Դ . ԿՈՍԴԱՆԴԻՆԻՅԷ ԹԱՐԻԽԻ . Կոստանդնուպոլսոյ առնուելուն պատմութիւնն է ։

Ե. ՓԷԶԼՈՒՔԷ. Ընդհանուր պատմութիւն՝ արաբերէն գրուած, աշխարհիս սկիզբէն մինչուան հիճրէթի 1065 թուականը, որ է Քրիստոսի թուականին 1654: Ասոր հաւելուածն ալ ինքը շինած է, որ հիճրէթի 1000 թուականէն մինչուան 1065 կը հասնի:

Զ. ԹԱԳՎԻՄ-ՈՒԹ-ԹԷՎԱՐԻԽ. Ժամանակագրութիւն է պարսկերէն և տաճկերէն՝ աշխարհիս սկիզբէն մինչուան Քրիստոսի 1640 թուականը: Աս գրուածքը եւրոպական լեզուներ ալ թարգմանուած ու տպուած է:

Է. ՃԻՀԱՆՆՈՒՄԱ, այսինքն Հայելի աշխարհի: Շատ յարգի աշխարհագրութիւն է արաբերէն շարադրած ու ետքը տաճկերէն ալ թարգմանուած ու տպուած: Ասոր լատին թարգմանութիւնն ալ տպուած է Գերմանիա 1784ին:

Ուրիշ շատ մանր գրուածքներ ալ ունի Քեաթիպ Չէլէպին, որ ամէնն ալ իր խորին հմտութեանը և սակաւագիւտ հանճարոյն ծնունդն ըլլալնին յայտնի կ'երեւցընեն:



# ՑԱՆԿ

